# ՏԱՐԵՄՈՒՏԻ ՀԵՔԻԱԹ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Ասես մշուշոտ սարի կատարով
Մի ալեմորուս ծերուկ անցավ
Եվ հազարավոր նուրբ փաթիլներով
Սար ու ձորերը ծածկեց անձայն...
Հետո նա հրաշք սառցե մատիտով
Կաղնու բներին գծեց զարդեր,
Անտառներ թավոտ, այգիներ փթթող,
Պարտեզներ ծաղկուն, ճերմակ վարդեր...
Ապա նա փչեց... Եվ շնչից իր պաղ
Պատկերներն իսկույն կենդանացան.
Ձյունանուշները բռնեցին շուրջպար,
Անտառը ամբողջ իրար անցավ:
Թմբուկ զարկեցին մատները քամու,
Սաղարթների մեջ բուքը նվագեց,
Աղամանդ տեղաց զարթնած անտառում,
Անտառը շողաց ճերմա՛կ փայլի մեջ...
՛Նոր տարվա հիմնը ծերուկը երգեց,
Ապա փաթաթվեց թուխ ամպերով,
Աննետանալով փաթիլների մեջ՝
Գնաց հեքիաթի ճամփաներով...

# ՏԱՍՆԵՐԿՈՒ

*(Սլովակյան հեքիաթ)*

Գիտեք, չէ՞, թե տարին քանի ամիս ունի:

Հենց որ մեկ ամիսը վերջանում է, իսկույն սկսվում է մյուսը: Եվ դեռ չի պատահել, որ հունվարը չգնացած՝ փետրվարը գա, իսկ մայիսը առաջ անցնի ապրիլից:

Ամիսները գնում են իրար հետևից և երբեք չեն հանդիպում միմյանց:

Բայց մարդիկ պատմում են, որ իբր Բոհեմայի լեռնաշխարհում կար մի աղջիկ, որը տեսել էր բոլոր տասներկու ամիսները մեկ անգամից:

Ինչպե՞ս էր դա պատահել:

Ահա թե ինչպես:

Մի փոքրիկ գյուղակում ապրում էր մի չար ու ժլատ կին՝ իր հարազատ աղջկա և խորթ աղջկա հետ միասին: Իր աղջկան նա սիրում էր, իսկ խորթ աղջըկա հետ աչքով աչք չուներ: Խորթ աղջիկը ինչ էլ աներ, նրա սրտովը չէր, որ կողմն էլ շրջվեր՝ նրա ուզած կողմը չէր:

Իր աղջիկը ամբողջ օրը փափուկ անկողնում ձըգված, մեղրաբլիթներ էր ուտում, իսկ խորթ աղջիկը առավոտից մինչև գիշեր ջունչ քաշելու ժամանակ չէր ունենում: Կամ ջուր էր բերում, կամ անտառից ցախ կրում, կամ սպիտակեղենը գետակում ցայում, կամ բոստանում մարգերը քաղհանում:

Ճաշակել էր նա և՛ ձմեռվա ցուրտը, և՛ ամառվա տոթը, և՛ գարնանային քամին, և՛ աշնան անձրևը: Գուցե հենց դրա համար էլ նրան վիճակվեց տեսնել բոլոր տասներկու ամիսները մեկ անգամից:

Ձմեռ էր: Հունվար ամիսը: Այնքան ձյուն էր թափվել, որ ստիպված էին դռների մոտից թիակներով մաքրել, իսկ անտառում, սարի վրա ծառերը կիսով թաղվել էին ձնակույտերի մեջ, անգամ ճոճվել չէին

կարողանում, երբ քամին հարձակվում էր նրանց վրա:

Մարդիկ նստել էին տներում և վառարաններ էին վառում:

Հենց այդ ժամանակ երեկոյան դեմ, չար խորթ մայրը դուռը բացեց, տեսավ, թե ինչպես է բուքը ավլում ձյունը, հետո ետ եկավ տաք վառարանի մոտ ու խորթ աղջկան ասաց.

— Գնա՛ անտառ ու ձնծաղիկ հավաքիր: Վաղը քրոջդ անվանակոչության օրն է:

Աղջիկը նայեց խորթ մորը: Կատա՞կ է անում, թե՞ իրոք նրան ուզում է անտառ ուղարկել: Հիմա անտառում սարսափելի է: Բացի այդ, ձմեռվա կեսին որտեղի՞ց ձնծաղիկ: Մարտ ամսից վաղ ձնծաղիկ չի երևա, ինչքան էլ փնտրես: Միայն կկործանվես անտառում, ձնակույտերի մեջ կխրվես, կմնաս:

Իսկ քույրը նրան ասում է.

— Թեկուզ կործանվես էլ, ոչ ոք հետևիցդ լաց չի լինի: Գնա՛, և առանց ծաղիկների չվերադառնաս: Ահա՛ քեզ զամբյուղ:

Լաց եղավ աղջիկը, փաթաթվեց պատառոտված շալի մեջ ու դռնից դուրս եկավ:

Քամին աչքերը ծեփում է ձյունով, շալն է վրայից պոկում: Քայլում է նա ոտքերը ձնակույտերից հազիվ դուրս քաշելով:

Գնալով ավելի ու ավելի է մթնում: Երկինքը սև է, ոչ մի աստղ ցած չի նայում: Իսկ գետինը մի քիչ լուսավորվում է ձյունից:

Ահա և անտառը: Այստեղ արդեն բոլորովին մութ է՝ ձեռքերդ անգամ չես տեսնի: Նստեց աղջիկը տապալված ծառին ու մնաց: Մտածում է, միևնույնն է, թե որտեղ կսառչես:

Եվ հանկարծ հեռվում, ծառերի արանքից փայլեց




մի կրակ՝ կարծես թե աստղ է խճճվել ճյուղերի արանքում:

Վեր կացավ աղջիկն ու գնաց դեպի այդ կրակը: Թաղվում է ձնակույտերի մեջ, անցնում է մացառների վրայով: «Միայն թե,— մտածում է,— կրակը չըհանգչի»: Իսկ կրակը չի հանգչում, ավելի ու ավելի պայծառ է վառվում: Արդեն տաք ծխի հոտ է գալիս և լսվում է, թե ինչպես է կրակի մեջ ցախը ճարճատում:

Աղջիկը արագացրեց քայլերը, դուրս եկավ բացատ ու քարացավ:

Բացատում լույս էր, կարծես արև լիներ: Բացատի կենտրոնում վառվում էր մի մեծ խարույկ, բոցը համարյա երկինք էր հասնում: Իսկ խարույկի շուրջը մարդիկ էին նստոտած՝ մի քանիսը կրակին ավելի մոտ, մի քանիսն էլ հեռու: Նստել էին ու կամաց զրուցում էին:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Աղջիկը նայում է նրանց և մտածում. ովքե՞ր են սրանք: Որսորդների նման չեն, ո՛չ էլ փայտահատների: Տես թե ի՛նչ շքեղ էլ հագնված են: Մեկի շորը արծաթից է, մյուսինը՝ ոսկուց, երրորդինը՝ կանաչ թավշից:

Սկսեց համրել, հաշվեց տասներկուսը՝ երեքը ծեր, երեքը հասակավոր, երեքը ջահել, իսկ վերջին երեքը դեռ բոլորովին պատանի են:

Երիտասարդները նստած են կրակին մոտիկ, իսկ ծերերը մի քիչ հեռու:

Հանկարծ ետ շրջվեց ծերերից մեկը, որն ամենաբարձրահասակն էր, երկար մորուքով ու խիտ հոնքերով, նայեց այն կողմը, ուր կանգնած էր աղջիկը:

Աղջիկը վախեցավ, ուզեց փախչել, բայց արդեն ուշ էր: Ծերունին բամբ ձայնով հարցնում է նրան.

— Որտեղի՞ց եկար, ի՞նչ ես անում այստեղ:

Աղջիկը ցույց է տալիս դատարկ կամբյուղն ու ասում է.

— Այս կամբյուղով ես պետք է ձնծաղիկ հավաքեմ:

Ծերունին ծիծաղեց.

— Ի՞նչ, հունվարին ձնծաղի՞կ, ա՛յ թե բան ես հնարել:

— Ես չեմ հնարել,— պատասխանում է աղջիկը,— խորթ մայրս է ինձ ձնծաղիկների ուղարկել և պատվիրել դատարկ կամբյուղով տուն չվերադառնալ:

Այստեղ բոլոր տասներկուսն էլ նայեցին նրան ու սկսեցին իրար մեջ խոսել:

Կանգնել է աղջիկը, ականջ է դնում, բայց խոսքերը չի հասկանում: Կարծես, ոչ թե մարդիկ են խոսում, այլ ծառերն են աղմկում:

Խոսեցին նրանք, խոսեցին ու լռեցին:

Իսկ բարձրահասակ ծերունին նորից շրջվեց ու հարցնում է.

— Իսկ ի՞նչ կանես, եթե ձնծաղիկ չգտնես: Չէ՞ որ ձնծաղիկը մարտ ամսից վաղ դուրս չի նայի:

— Անտառում կմնամ,— ասում է աղջիկը,— կսպասեմ մինչև մարտ ամիսը գա: Ավելի լավ է անտառում սառչեմ, քան թե առանց ձնծաղիկների տուն վերադառնամ:

Ասաց ու լաց եղավ:

Եվ հանկարծ տասներկուսից մեկը՝ ամենաերիտասարդն ու ամենաուրախը մուշտակը ուսին նետած, վեր կացավ ու մոտեցավ ծերունուն.

— Հունվա՛ր եղբայր, քո տեղը մի ժամով ի՛նձ վիջիր:

Ծերունին երկար մորուքը շոյեց և ասաց.

— Ես կվիջեի, բայց չի կարող մարտը փետրվարից առաջ լինել:

— Դե լա՛վ,— քրթմնջաց մյուս, գզգզված մորուքով ծերունին,— վիջի՛ր, ես չեմ վիճի: Բոլորս էլ լավ գիտենք այդ աղջկան: Նրան տեսել ենք մեկ սառցի մեջ բացված անցքի մոտ՝ դույլերը ձեռքին, մեկ անտառում՝ ցախի կապոցով: Բոլորին էլ նա ծանոթ ու հարազատ է: Հարկավոր է օգնել:



— Լավ, թող ձեր ասածը լինի,— համաձայնեց Հունվարը:

Նա իր սառցե գավազանով խփեց գետնին ու խոսեց.

Սառնամանիքնե՛ր, մի՛ ճռճռացեք
Արգելանտառում,
Կեղևը դալար մի՛ կրծոտեցեք
Բարդու, սոճու և նախշուն կեչու:
Բավ է սառեցնեք
Խեղճ ագռավներին,
Կամ խրճիթ խուժեք,
Մրսեցնեք մարդուն...

Լռեց ծերուկը, և անտառը հանդարտվեց: Ծառերը դադարեցին սառնամանիքից ճաքճքել, իսկ ձյունը սկսեց թափվել խիտ, մեծ, փափուկ փաթիլներով:

— Դե, հիմա քո հերթն է, եղբա՛յր,— ասաց Հունվարը և գավազանը տվեց փոքր եղբորը՝ գզգզված Փետրվարին:

Սա թխկացրեց գավազանով, մորուքը տմբացրեց ու բոռաց.

Մրրի՛կ, հո՛ղմ ու փոթորի՛կ,
Փչե՛ք՝ ինչքան ուժ ունեք,
Բո՛ւք ու բորա՛ն, էլեք եկե՛ք,
Զօր ու գիշեր աղմկե՛ք:
Ամպերի մեջ փո՛ղ փչեցեք,
Երկրի վրա սավառնեցե՛ք
Ու դաշտերում օձագալար
Ձեր երգերը երգեցե՛ք:

Եվ հենց որ նա այս ասաց, ճյուղերի մեջ աղմկեց փոթորկոտ, խոնավ քամին, պտտվեցին ձյան փաթիլները, սլացավ գետնի վրայով սպիտակ ձնաբուքը:

Իսկ Փետրվարը տվեց իր սառցե գավազանը կրտսեր եղբորն ու ասաց.

— Հիմա քո հերթն է, եղբա՛յր Մարտ:

Վերցրեց կրտսեր եղբայրը գավազանը և խփեց գետնին:

Նայում է աղջիկը, բայց դա արդեն գավազան չէր. դա արդեն մի մեծ ճյուղ էր, ամբողջովին բողբոջներով պատած:

Ծիծաղեց Մարտը և երգեց իր կրնգուն, տղայական ամբողջ ձայնով.

Քչքչացե՛ք, առվակնե՛ր,
Ու ցոլացե՛ք, լճակնե՛ր:
Ձմռան ցրտերը անցան,
Ելե՛ք, ելե՛ք, մրջյուննե՛ր:
Քնից ելավ արջ բրդոտը
Ու իր որջից դուրս սողաց,
Թռչունների երգը հնչեց,
Եվ ձնծաղիկը ժպտաց...

Աղջիկը մինչևիսկ ծափ զարկեց: Ո՞ւր կորան մեծ-մեծ ձնակույտերը, ո՞ւր են սառցե լուլաները, որ կախված էին ամեն մի ճյուղից:

Նրա ոտքերի տակ գարնանային փափուկ հողն էր: Ամեն տեղից կաթում էր, հոսում, քչքչում: Ճյուղերի վրա բողբոջներն ուռել էին և մուգ կեղևի տակից արդեն ելնում էին առաջին կանաչ տերևիկները:

Նայում է աղջիկը և նայելուց չի կշտանում:

— Էլ ի՞նչ ես կանգնել,— ասում է նրան Մարտը,— շտապի՛ր, եղբայրներս ինձ ու քեզ ընդամենը մեկ ժամ են նվիրել:

Աղջիկը սթափվեց ու վազեց անտառի՝ խորքը ձնծաղիկներ որոնելու: Իսկ դրանց թիվ ու հաշիվ չկար: Թփերի տակ ու քարերի տակ, ճումբերի վրա ու ճումբերի տակ՝ ուր էլ նայես: Նա զամբյուղը լիքը լցրեց, գոգնոցը նույնպես, ու շտապեց դեպի բացատը, ուր վառվում էր խարույկը, ուր տասներկու եղբայրներն էին նստած:

Իսկ այնտեղ ո՛չ խարույկը կար, ո՛չ եղբայրները: Լուսավոր էր բացատը, բայց ոչ նախկինի պես: Լույսը ոչ թե կրակից էր, այլ լիալուսնից, որը բարձրացել էր անտառի վրա:

Ափսոսաց աղջիկը, որ եղբայրներին շնորհակալություն հայտնել չկարողացավ, և վազեց տուն:

Իսկ լուսինը տողաց նրա հետևից:

Ինքն էլ չիմացավ, թե ինչպես հասավ իրենց դըռանը և հենց տուն մտավ, լուսամուտից այն կողմ նորից ոռնաց բուքը, իսկ լուսինը թաքնվեց ամպերի հետևում:

— Հը՛, ի՞նչ,— հարցրին նրան խորթ մայրն ու քույրը,— վերադարձա՞ր: Իսկ ո՞ւր են ձնծաղիկները:

Ոչինչ չպատասխանեց աղջիկը, միայն գոգից ձընծաղիկները թափեց նստարանին ու զամբյուղը դրեց դրանց կողքին:

Խորթ մայրն ու քույրը ապշեցին.

— Էդ որտեղի՞ց վերցրիր:

Աղջիկը պատմեց նրանց ամեն բան, ինչպես ..ղել էր: Լսում են նրանք երկուսն էլ ու գլուխներն են շարժում՝ հավատում են ու չեն հավատում: Հավատալ դժվար է, բայց ահա, նստարանի վրա՝ մի ամբողջ կույտ ձնծաղիկներ, թարմ, երկնագույն: Նրանցից ուղղակի մարտ ամսվա հոտ է բուրում:

Իրար նայեցին խորթ մայրն ու աղջիկը և հարցրին.

— Ամիսները քեզ էլ ոչինչ չտվի՞ն:

— Դե, ես նրանցից ավելի բան չխնդրեցի:

— Այ հիմա՛ր, խսկակա՛ն հիմար,— ասում է քույրը,— հազարից մի անգամ բոլոր տասներկու ամիսների հետ հանդիպել է և ոչ մի բան, բացի ձընծաղիկներից, չի խնդրել: Եթե ես քո տեղը լինեի, գիտեի, թե ինչ կխնդրեի: Մեկից՝ քաղցր տանձեր ու խնձորներ, մյուսից՝ հասած մորի, երրորդից՝ սպիտակավուն սունկեր, չորրորդից՝ թարմ վարունգներ:

— Խելքի բա՛ն ես, աղջի՛կս,— ասում է խորթ մայրը:— Ձմռանը մորին ու տանձերը անգին են: Էդ բոլորը կծախեինք ու ինչքա՜ն փող կվաստակեինք: Իսկ այս հիմարը ձնծաղիկներ է քաշ տվել: Հագնվի՛ր, աղջի՛կս, շո՛ւտ տաք հագնվիր ու գնա՛ անտառի բացատ: Դե, նրանք քեզ հո չե՞ն կարող խաբել, չնայած նրանք տասներկուսն են, իսկ դու՝ մեկը:

— Նրանք ի՞նչ են, որ ինձ խաբեն,— պատասխանում է աղջիկը, մուշտակը հագնում, գլխաշորը գցում գլխին, ձեռնոցները վերցնում:

Մայրը ետևից կանչում է.

— Ձեռնոցներդ հագի՛ր, մուշտակդ կոճկի՛ր:

Իսկ աղջիկն արդեն դռնից դուրս էր եկել, վազում էր անտառ:

Գնում է քրոջ հետքերով, շտապում է: «Շուտով բացատ հասնեի»,— մտածում է նա:

Անտառն ավելի ու ավելի խիտ, ավելի մութ է դառնում: Ձնակույտերն ավելի բարձր են, խռիվ ընկած ծառերը կանգնած են պատի պես:

«Ա՜խ,— մտածում է խորթ մոր աղջիկը,— ինչո՞ւ ես անտառ եկա: Ինձ համար կպառկեի հիմա տանը, տաք անկողնում, իսկ հիմա գնա ու սառիր: Կարող է գնաս ու ետ չգաս»:

Այդ մտածելիս մեկ էլ հեռվում տեսավ կրակը՝ կարծես ճյուղերի արանքում աստղ էր խճճվել:

Գնաց դեպի կրակը: Գնա՛ց, գնա՛ց ու դուրս եկավ բացատը: Բացատի մեջտեղում մի մեծ խարույկ էր վառվում, խարույկի շուրջը նստած էին տասներկու եղբայր՝ տասներկու ամիսները: Նստած կամաց զրուցում էին:

Մոտեցավ խորթ մոր աղջիկը խարույկին, գլուխ չտվեց, մի սրտալի խոսք չասաց, ընտրեց խարույկի մոտ մի տեղ, որ ավելի տաք էր ու սկսեց տաքանալ:

Լռեցին եղբայր ամիսները: Խաղաղվեց անտառը: Եվ հանկարծ Հունվար ամիսը գավազանը խփեց գետնին:

— Ո՞վ ես դու,— հարցրեց,— որտեղի՞ց հայտնըվեցիր:

— Տնից,— պատասխանում է խորթ մոր աղջիկը,— դուք այսօր իմ քրոջը մի ամբողջ զամբյուղ ձնծաղիկ եք տվել: Ահա ես էլ եկել եմ նրա հետքերով:

— Քո քրոջը մենք գիտենք,— ասում է Հունվար




ամիսը,— իսկ քեզ առաջին անգամ ենք տեսնում: Ինչո՞ւ ես դու բարեհաճել մեզ մոտ գալ:

— Նվերների համար: Թող Հունիս ամիսը իմ պամբյուղում մորի լցնի, միայն թե ամենախոշորները. Հուլիս ամիսը՝ թարմ վարունգներ ու սպիտակ սունկեր, Օգոստոս ամիսը՝ քաղցր խնձորներ ու տանձեր, Սեպտեմբերը՝ հասած ընկույզներ:

— Սպասի՛ր,— ասում է Հունվար ամիսը:— Ամառը գարնանից առաջ լինել չի կարող, իսկ գարունը՝ ձմեռվանից առաջ: Հունիսը դեռ շատ հեռու է: Հիմա անտառում ես եմ տերը, այստեղ պետք է թագավորեմ երեսունմեկ օր:

— Սրա՜ն տես, ինչ բարկացկո՜տն է,— ասում է խորթ մոր աղջիկը,— դե, ես հո քեզ մոտ չե՞մ եկել, դու ձյունից ու եղյամից բացի, ոչինչ չունես: Ինձ ամառվա ամիսներն են հարկավոր:

Մռայլվեց Հունվար ամիսը:

— Ամռանը փնտրիր ամա՛ռը,— ասաց:

Վրա բերեց նա իր լայն թևքը, և անտառում բուք ու բորան բարձրացավ, պատեց երկիր ու երկինք, պարուրեց և՛ ծառերը, և՛ այն բացատը, որտեղ նստած էին եղբայր ամիսները: Ձյան մեջ չէր երևում խարույկը, և միայն լսվում էր, թե ինչպես, ինչ-որ տեղ, սուլում է կրակը, ճարճատում, ալիք տալիս:

Վախեցավ խորթ մոր աղջիկը:

— Դադարի՛ ր,— ճչաց նա:

Բայց ի՞նչ դադարել:

Բորանը պտտեցնում է նրան, աչքերը կուրացնում, շունչը կտրում: Ընկավ աղջիկը ձնակույտի մեջ, և ձյունը նրան ծածկեց:

Խորթ մայրը սպասե՜ց, սպասե՜ց իր աղջկան, լուսամուտից նայեց, դուրս վազեց՝ նա չկար ու չկար: Հագավ մայրը տաք մուշտակն ու գնաց անտառ: Բայց անտառի խորքում այդ բքի ու մթության մեջ մա՞րդ կգտնես:

Ման եկավ նա, ման եկավ, փնտրե՜ց, փնտրե՜ց այնքան, մինչև որ ինքն էլ սառեց:

Այդպես էլ երկուսով անտառում մնացին ամռանը սպասելու:

Իսկ խորթ աղջիկը երկար ապրեց աշխարհում, մեծացավ, ամուսնացավ, երեխաներ մեծացրեց:

Պատմում են, որ նա իր տան առջև մի այգի ուներ, այնպիսի հրաշալի այգի, որպիսին աշխարհը չէր տեսել: Ամենաշուտն այդ այգում էին ծաղկում ծաղիկները, հասունանում հատապտուղները, հյութով լցվում խնձորներն ու տանձերը: Շոգ ժամանակ այնտեղ հով էր, բքի ժամանակ՝ հանդարտ:

— Այդ տանտիրուհուն բոլոր տասներկու ամիսները մեկ անգամից են հյուր գալիս,— ասում էին մարդիկ:

Ով գիտե, գուցե և այդպես էր:

Թարգմ. Ա. ԿԱՐԱԳՅՈԶՅԱՆԻ

# ԴԵԿԱԲՐԻՍՏՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ





ԲԵՍՏՈՒԺԵՎ


ԼՈՐԵՐ


ՊՈՒՇՉԻՆ

*ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

Դեկաբրիստների զինված ելույթը, որը տեղի ունեցավ Պետերբուրգում, 1825 թ. դեկտեմբերի 14-ին, ճնշված էր: Ցարիզմը դաժանորեն հաշվեհարդար էր տեսնում ինքնակալության և ճորտատիրության դեմ հանդես եկած ապստամբների հետ: Կախաղան, տաժանակրություն, աքսոր... Աստիճանազրկված շատ դեկաբրիստներ էլ, որպես շարքային զինվորներ, ծառայության ուղարկվեցին Անդրկովկասում գործող կովկասյան կորպուսը՝ կռվելու 1826 թ. հուլիսին սկսված ռուս-պարսկական պատերազմում: Ցարը ապստամբներին հնարավորություն էր տվել «արյամբ քավելու մեղքերը»:

Դեկաբրիստներից շատերը, գրքերից ծանոթ լինելով Հայաստանի հերոսական անցյալին և մշակույթին, կարեկցանքով լցվեցին հայ ժողովրդի հանդեպ, տեսնելով նրա թշվառ ներկան: Դեկաբրիստ Ե. Ե. Լաչինովը գրում էր. «Դո՛ւ, երբեմնի մեծահռչա՛կ Հայաստան, դու, որ մեզ մինչև հիմա հիացնող այդքան հուշարձաններ ես թողել: Ի՞նչ է քեզ սպասում: Կհայտնվե՞ս արդյոք նորից փառքի ասպարեզում, թե՞ քո թախծոտ զավակներին վիճակված է հավիտյանս լքյալ գոյություն»: Ի տարբերություն ռեակցիոն հրամանատարության գաղութակալական ձգտումներին, դեկաբրիստները ռուս-պարսկական պատերազմը դիտեցին Հայաստանի ազատագրման համար մղվող կռիվ և ճակատամարտերում ցուցաբերելով անձնազոհություն և քաջություն, իրենց անունները փառքով պսակեցին:

Երևանի և մյուս բերդերի գրավման գործում նշանակալից դեր խաղաց դեկաբրիստ Միխայիլ Իվանովիչ Պուշչինը: Հաշվի առնելով նրա խորը գիտելիքները և փորձը, ռուսական բանակի հրամանատարությունը ստիպված էր նրան վստահել բերդերի գրավման ծրագրերն ու ինժեներասակրային աշխատանքները: Պուշչինը վտանգելով կյանքը, պարսկական տարազ հագած, երեկոները թափանցում էր Երևան և ուսումնասիրում բերդի ամրությունները: Ականատես Ա. Ս. Գանգեբլովը գրում է. «Պուշչինը ղեկավարում էր թե՛ մանր և թե՛ խոշոր աշխատանքները՝ սկսած բրիչի և բահի գործից, մինչև գետանցներ ու կամուրջներ պատրաստելը, ամրությունների նախագծումն ու կառուցումը: Նա մասնակցում էր նաև գլխավոր հրամանատարի մոտ

տեղի ունեցող ռազմական խորհրդակցություններին, որտեղ նրա կարծիքները գրեթե միշտ հաղթող էին հանդիսանում»: Պուշչինի ռազմական սխրագործությունները այնքան ակնառու էին, որ հրամանատարությունը միջնորդեց ցարին՝ նրան պարգևատրելու և վերցված կոչումը վերադարձնելու: Պուշչինը իր հիշողություններում դառնությամբ է հիշում, որ իրեն՝ նախկին կապիտանին, իբրև ցարական ողորմածություն տրվեց… ենթասպայի կոչում:

Դեկաբրիստ Նիկոլայ Նիկոլաևիչ Դեպրերադովիչը աչքի ընկավ ռուս-պարսկական պատերազմի հենց առաջին օրերից: Նրա ծառայության թերթիկում գրված է. «1826 թ. սեպտեմբերի 13-ին, Գանձակի տակ պարսիկների դեմ մղած ճակատամարտի ժամանակ, իր ջոկատով նետվեց թշնամու հետևակի վրա, քշեց ու ոչնչացրեց նրան»: Դեպրերադովիչը քաջաբար էր կռվում նաև Սարդարապատի և Երևանի գրավման համար մղված մարտերում: Նա հայ աշխարհազորայինների հետ կատարում էր ամենադժվարին և ամենածանր առաջադրանքները:

«Իրեն դրսևորել է որպես անվեհեր մարտիկ», «իրեն դրսևորել է որպես քաջ զինվորական», «ցուցաբերել է անհողդողդ անվեհերություն» և նման այլ տողեր կարելի է կարդալ դեկաբրիստներ Ե. Ե. Լաչինովի, Լ. Ա. Մոլչանովի, Ա. Ս. Գանեբլովի, Ֆ. Գ. Վիշնևսկու, Ա. Ե. Ռինկևիչի, Մ. Պ. Մալյուտինի, Ն. Ն. Օրժիցկու, Վ. Դ. Սուխարուկովի, Ա. Վ. Վեդենյապինի, Ն. Պ. Ցեբրիկովի և էլի շատերի ծառայության թերթիկներում:

Քաջաբար էր կռվում նաև դեկաբրիստներին «մեղսակից» ճանաչված, ռուս մեծ զորավար Ա. Վ. Սուվորովի թոռը՝ Ալեքսանդր Ալեքսանդրովիչ Սուվորովը: Նա փայլեց հատկապես Սարդարապատի և Երևանի համար մղված ճակատամարտերում, որի համար պարգևատրվեց Վլադիմիրի 4-րդ աստիճանի շքանշանով և ոսկե սուսերով: Նրա կողքին մարտնչած մի այլ դեկաբրիստ՝ Պ. Բեստուժևը, Ա. Ա. Սուվորովի մասին իր հուշերում գրում է. «Նրա խելքն ու ռազմական ընդունակությունները անմար էին պահում նրա մեծ պապի փառքը»:

Հայաստանի ազատագրման գործում աչքի ընկան նաև Պյոտր և Պավել Բեստուժև, Պյոտր և Իվան Կոնովիցին եղբայրները: Խոշոր դեր խաղացին նաև չաստիճանազրկված դեկաբրիստները՝ գնդապետներ Ի. Գ. Բուրցովը, Պ. Մ. Լեմանը, փոխգնդապետ Ա. Մ. Միկլաշևսկին և կապիտան Վ. Դ. Վոլխովսկին: Իր զորավարական տաղանդով հատկապես փայլեց Ի. Գ. Բուրցովը, որին արդեն ռուս-թուրքական պատերազմի ժամանակ շնորհվեց գեներալ-մայորի կոչում: «Չունենալով երկյուղ, լինելով տաքարյուն,— իր հիշողություններում Բուրցովի մասին գրում է Ն. Ի. Լորերը,— նա ընթանում էր բոլորի առջևից, իրեն նետելով ամենավտանգավոր տեղերը»: Բուրցովին տանջում էր աստիճանազրկված ընկերների ստորացուցիչ վիճակը, սիբիրյան աքսորում գտնվողների ճակատագիրը: Նա կարծես մահ էր փնտրում, որը և գտավ 1829 թ. հուլիսի 18-ին, Էրզրումից 135 վերստ հեռավորության վրա, Խարթ գյուղի մոտ մղված մարտում: Դեկաբրիստ Ն. Վ. Բասարգինը, իհարկե, ոչ առանց հիմքի, գրում էր. «Նա մտադրություն ուներ մեռնել կամ էլ այնպես աչքի ընկնել, որ արժանանար ցարի առանձնահատուկ ուշադրությանը, և այն ժամանակ խնդրեր իր աքսորված ընկերների համար»:

Մեկ առ մեկ հիշատակել Հայաստանի ազատագրման կռիվներին մասնակցած բոլոր դեկաբրիստներին, իրենց կատարած սխրագործություններով, հնարավոր չէ: Մոտավոր հաշվումներով, Հայաստանի ազատագրման համար մարտնչել են դեկաբրիստների շարժմանը մասնակցած 3 հազար հոգի: Արևելյան Հայաստանը պարսկական լծից ազատագրվելուց հետո, նրանք կռվեցին 1828—29 թթ. ռուս-թուրքական պատերազմում, ակտիվորեն մասնակցեցին Կարսի, Ախալքալաքի, Էրզրումի համար մղված մարտերին, ու հերոսաբար ընկան՝ Բուրցովը, Բեստուժև-Մարլինսկին, Միկլաշևսկին, Բերստելը, Լիխարյովը, Բոդիսկոն, ծանր հիվանդություններից վախճանվեցին՝ Սեմիչևը, Մուսին-Պուշկինը, Իսկրիցկին, Օդոևսկին և ուրիշներ:

Անգնահատելի է Անդրկովկաս աքսորված դեկաբրիստների դերը Արևելյան Հայաստանի ազատագրման գործում: Արհամարհելով իրենց նկատմամբ եղած անվստահությունը, հետապնդումները, անշնորհակալ վերաբերմունքը, նրանք քաջաբար կռվեցին, համարելով, որ թուրք փաշաների և պարսիկ խաների կեղեքումից հայ ժողովրդին ազատագրելը հանդիսանում է մարդկության առաջադիմության համար մղված այն պայքարի շարունակությունը, որին նվիրաբերել էին իրենց կյանքը:




Չորս կողմում միայն հաստաբուն ծառեր էին, և գետինը ծածկված էր չորացած տերևների հաստ շերտով: Երկնքի փոխարեն նրանց գլխավերևում սաղարթախիտ ծառերի իրար հյուսված ճյուղերն էին: Արմանն ու Ռ. Արմանը դեմ-դիմաց կանգնած նայում էին տեղանքի քարտեզին:

— Ուրեմն պետք է շարժվենք այս ուղղությամբ,— վերջապես ասաց Արմանը, ցույց տալով մի պատահական ուղղություն:— Տե՛ս, սա անտառն է, իսկ մյուս կողմում լիճը:

— Իսկ ինձ թվում է, որ այս կողմն ենք գնալու:— Ռ. Արմանը մատնացույց արեց հակառակ ուղղությունը:— Մենք եկել ենք մյուս կողմից: Դա նշանակում է...

— Դու ոչ մի բան չես հասկանում,— ընդհատեց Արմանը:— Գիտե՞ս ես քանի անգամ եմ մասնակցել տեղանքում կողմնորոշվելու մրցումներին:

— Ես հասկանում եմ ճիշտ այնքան, որքան դու,— վիրավորված վրա տվեց Ռ. Արմանը:— Իմ գիտելիքներն ու քո գիտելիքները մազաչափ չեն տարբերվում: Եթե այդպես չլիներ, ես ինքս էլ քեզ կասեի, որ դու ոչինչ չես հասկանում: Միայն թե ես չեմ ուզում ինքս ինձ էլ վիրավորել...

— Լսի՛ր, Ռ., շա՞տ ես գլուխս ցավեցնելու,— բարկացավ Արմանը:— Ե՞ս եմ մարդը, թե՞ դու: Վերջնական խոսքը պատկանում է ոչ թե ռոբոտին, այլ մարդուն, հասկացա՞ր...

Ռ. Արմանը, որ մի սովորական ռոբոտ էր, նեղացած շրջվեց իրեն ստեղծողից ու քայլեց նրա ցույց տված ուղղությամբ: Իսկ ութերորդցի Արմանը, որ ռոբոտին կառուցել էր պատրաստի մասերից՝ համաձայն «Պատրաստիր ինքդ» կոնստրուկտորական մոդելի ու նրան հաղորդել իր բոլոր գիտելիքները, հետևեց նրան: Սակայն նրանք երկար չքայլեցին, որովհետև ընդամենը տասը մետրից հետո ծառերի բների համատարած ֆոնի վրա մեծ-մեծ կարմիր տառերով գրվեց.

ԴՈՒՔ ՍԽԱԼ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ ԵՔ ԳՆՈՒՄ: ՍՏԱՆՈՒՄ ԵՔ ՏՈՒԳԱՆԱՅԻՆ 6 ՄԻԱՎՈՐ:

Ռ. Արմանն առանց Արմանին նայելու կանգ առավ ու բարձր ձայնով հառաչեց.

— Մեր միավորները ավելանալու փոխարեն պակասում են...

— Մե՛ծ բան է,— հեգնեց Արմանը:— Թե՞ կարծում ես քո գիտելիքներն ինից շատ են: Եվ բացի այդ, հաստատ չես կարող ասել, թե քո առաջարկած ուղղությունը ճիշտ էր:

— Հաստատ ճիշտ էր,— պնդեց ռոբոտը:

— Դե լավ,— որոշեց Արմանը,— մրցության հաջորդ խնդիրը դու ես վճռելու:

Դարավոր անտառը չքացավ: Անտառի հետ չքացավ նաև ծառերի տերևների մեջ խճճված թույլ քամին: Փոխարենը խուլ աղմուկ լսվեց, և նրանք, մինչև ուշքի կգային, հայտնվեցին աստղաթիռի կառավարման գլխավոր վահանակի մոտ: Արմանը հուսահատ նայեց մանր ու խոշոր բազմաթիվ էկրաններին, տարբեր գույներով ներկված բռնակներին ու ստեղներին և հառաչեց.




Այսօր մի ձիավոր իջավ ձորով,
Այսօր մի ձիավոր դաշտով անցավ,
Այսօր մի ձիավոր ճերմակ շորով
Հեռու կատարները բարձրացավ:

Այսօր քամին՝ հոգնած մի սուրհանդակ,
Ճերմակ լուրեր բերեց հեռուներից,
Եվ թմրած ու սառած ջրերի տակ
Ալիքների փայլը կորավ նորից:

Էլ չի վառվի ջրում, եղեգնի մոտ,
Խարույկը ձկան ալ թեփուկների,
Եվ գիշերվա կեսին աստղը ցողոտ
Ցանկապատի վրա չի թափառի:

Իսկ երկինքը այսօր կիջնի ներքև
Եվ փռել կգա անձայն տանիքներին,
Նա կթողնի ճերմակ ոտնահետքեր
Դեպի հեռուն ձգվող ճանապարհին...

Այսօր մի ձիավոր իջավ ձորով,
Այսօր մի ձիավոր դաշտով անցավ,
Այսօր մի ձիավոր ճերմակ շորով
Հեռու կատարները բարձրացավ:

— Թռչում ենք դեպի աստղե՜րը,— հիացած բացականչեց ռոբոտը:— Ես շատ վաղուց էի երազում դրա մասին:

— Պա՜հ-պա՜հ, սուտասանի՜ն տեսեք,— ծիծաղեց Արմանը:— Ես քեզ ընդամենը երկու օր առաջ եմ կառուցել: «Վաղուց էի երազում»: Չէ մի՜...

— Չես հավատում, մի՛ հավատա,— նորից նեղացավ Ռ.-ն: — Քեզ թվում է սու՞տ եմ ասում: Ախր դու ինձ ոչ թե կառուցել, այլ հավաքել ես պատրաստի մասերից: Իսկ գործարանում կառուցված իմ ուղեղում վաղուց գրված էր այդ երազանքը, խելո՛ք: Այն ժամանակ դու դեռ չէիր էլ որոշել մասնակցել մրցույթին: Եվ բացի այդ, ի միջի այլոց, քո գիտելիքներն իմ ուղեղում գրանցելուց հետո այնքան շատ ազատ տեղ է մնացել, որ...

Նա խոսքը կիսատ թողեց, որովհետև սրահի գոգավոր պատի ամբողջ երկարությամբ կապույտ լուսավոր տառերով գրվեց առաջադրանքը.

ՎԱՅՐԷՋՔ ԿԱՏԱՐԵՔ ՄՈՏԱԿԱ ԱՍՏՂԻ ԵՐՐՈՐԴ ՄՈԼՈՐԱԿԻ ՎՐԱ: ԴԵՊԻ ԱՅՆՏԵՂ ԵՆ ԹՌՉՈՒՄ ՄՐՑՈՒՅԹԻ ՄՅՈՒՍ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԸ: ՓԱՓՈՒԿ ՎԱՅՐԷՋՔ ՁԵԶ:

— Գնացի՛նք,— ոգևորված ասաց Ռ. Արմանը:— Տիեզերական ամենահետաքրքիր արկածները մեզ են սպասում: Հիմա մենք կորոշենք, թե որն է ամենամոտ աստղը...

Նրանք հայացքները բարձրացրին դեպի տեսադաշտի մեծ էկրանը, որի սև ֆոնի վրա շողում էին հազարավոր աստղեր: Ռ. Արմանը շփոթվեց, նայելով այդքան շատ լուսատուների: Բազմագույն ու տարբեր չափերի այդ անթիվ պայծառ կետերից ո՞րն էր ամենամոտիկը:

— Դե, գնացի՜նք,— հեգնեց Արմանը,— էլ ինչի՞ ես սպասում: Տիեզերական ամենահետաքրքիր արկածները վաղուց արդեն մեզ են սպասում...

Այդ նույն պահին, իրենց նավի կառավարման սրահում նստած, աստղային երկնքին էին նայում մրցության ուրիշ երկու մասնակիցներ՝ Արմենն ու Ռ. Արմենը:

— Ի՞նչ ես կարծում, Ռ., ո՞րն է դրանցից ամենամոտը,— հարցրեց Արմենը:

— Պետք է որոշել,— պատասխանեց ռոբոտը:— Ինձ թվում է, առայժմ հարկավոր է միայն լուսանկարել աստղերի բաշխվածությունը և շարունակել թռիչքը: Քանի որ մենք շարժվում ենք լույսին շատ մոտ արագությամբ, ապա մոտ տասը րոպեից հետո կարելի է նորից նկարել և համեմատել առաջինի հետ:

— Ճիշտ է,— անմիջապես համաձայնեց Արմենը:— Եթե աստղերը շատ հեռու են, ապա մեր շարժման հետևանքով նրանց դիրքերը փոփոխություն չեն կրի, իսկ մոտիկները կտեղաշարժվեն: Ինչպես շարժվող գնացքից նայելիս: Երբ անցնում ես մոտ գտնվող առարկայի կողքով, թվում է, նա մեծ արագությամբ ետ է սահում: Որքան ավելի հեռու է առարկան, այնքան ավելի դանդաղ է ետ նահանջում: Իսկ շատ հեռվում գտնվող առարկաները կամ ծառերն ու լեռները համարյա անշարժ են թվում:

— Երկրից ճիշտ այդ եղանակով էլ որոշում են մոտ աստղերի հեռավորությունները,— շարունակեց Ռ. Արմենը:— Մենք նույնպես մի քանի անգամ լուսանկարելով և այդ նկարները համեմատելով կարող ենք ճշգրտորեն որոշել, թե որն է աստղերից ամենամոտը: Արի սկսե՛նք գործը: Ժամանակը քիչ է...

Նրանք առանց ժամանակ կորցնելու գործի անցան, և ընդամենը տասը րոպե հետո աստղաթիռն ուղղություն վերցրեց դեպի աստղը, որը փայլում էր դեղնակարմրավուն լույսով: Իսկ դարձյալ տասը րոպե անց նրանց նոր դիտումները ցույց տվեցին, որ ուղղությունը ճիշտ է որոշված:

Որպես նրանց իրավացի լինելու ապացույց, սրահի պատի վրա պայծառ կապույտ տառերով գրվեց.

ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆԸ ՃԻՇՏ Է ՈՐՈՇՎԱԾ: ՍՏԱՆՈՒՄ ԵՔ 10 ՄԻԱՎՈՐ:

— Կեցցե՜ս, Ռ. Արմե՜ն:— Արմենն ուրախությունից ձեռքով ուժեղ խփեց ռոբոտի ուսին:— Մեր միավորները գալիս են ու գալիս...

— Իմ գիտելիքները նույնն են, ինչ որ քոնը,— համեստաբար պատասխանեց ռոբոտը:— Եվ եթե ինձ ինչ-որ բան հաջողվում է, ապա միայն քո շնորհիվ, Այնպես որ դու ի՛նքդ կեցցես:

— Արի՛ հենց հիմա սկսենք նպատակակետի դիտումները,— առաջարկեց Արմենը:— Միևնույն է, դրանք շուտով պետք են գալու մեզ...

Կարմրադեղնավուն անանուն աստղը համարյա աննկատելիորեն պայծառանում էր: Իսկ դա նշանակում էր, որ նրանք կամաց-կամաց մոտենում են այդ աստղի համակարգին...

«Թռչող Դելֆին» նավում, որով ճանապարհորդում էին Արմանները, դեռ վճիռ չէր կայացվել: Նրա նավավարները դեռ փնտրում էին իրենց ուղին և տաք-տաք վիճում իրար հետ:

— Գոնե նավավարության մի դասագիրք լիներ— արդեն որերորդ անգամ տրտնջաց Արմանը:— Ամեն ինչ հիշել հնարավոր չէ, չէ՞...

— Իսկ դու նորի՛ց փորձիր,— խորհուրդ տվեց ռոբոտը:— Գուցե հաջողվի մի բան հիշել: Եթե դասերին մասնակցել ես, գլխիդ մեջ մի բան մնացած կլինի, չէ՞: Ամեն ինչ չէր ցնդի...

— Երևի ուշադիր չեմ եղել,— խոստովանեց տղան:— Կարծեմ, պետք էր համեմատել աստղերի դիրքերը... Լավ չեմ հիշում:

— Ինչի՞ հետ համեմատել:

— Երևի իրար հետ,— կասկածանքով ասաց Արմանը:— Չէ՛, պետք էր մի քանի րոպե ընդմիջումով...

— Ընդմիջումով ի՞նչ:

Արմանն անհույս ուսերը թոթվեց: Սակայն մի քանի րոպե անց նրա հիշողության մեջ վերակենդանացավ գործնական պարապմունքներից մեկը, որի ժամանակ նավավարության ուսուցիչը պատմում էր աստղերի հեռավորությունների որոշման ձևերի մասին:

— Էվրիկա՛,— տեղից ուրախացած վեր ցատկեց նա: Լսել էր, որ ժամանակին Արքիմեդը նույնպես այդ բառն էր օգտագործել, երբ լուծել էր մի շատ կարևոր խնդիր:— Հիշեցի՛, հիշեցի՛:

Մի քանի րոպե անց նրանք ևս, առանց բարդությունների, գտան դեղնակարմրավուն աստղը և դրա համար ստացան յոթ միավոր, քանի որ ավելի շատ ժամանակ էին ծախսել: Ուրախացած Արմանը շարունակ շաղակրատում էր, թե ինքն անպայման հայտնի նավորդ է դառնալու և նավավարական ոչ մի խնդիր չի վախեցնում իրեն: Ռ. Արմանը նույնպես գովում էր նրան, չմոռանալով ասել, որ ինքն էլ նույն բաները գիտե, ինչ իրեն ստեղծողը:

Այդպես վրույցով տարված, նրանք միանգամից չնկատեցին հատուկ հաղորդումների էկրանին հայտնըված բառերը.

«ԱՍՈՒՊ» ԱՍՏՂԱՆԱՎԻ ԱՆՁՆԱԿԱԶՄԻՆ ՎԸՏԱՆԳ Է ՍՊԱՌՆՈՒՄ: ՆՐԱՆՑ ՕԳՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՀԱՐԿԱՎՈՐ Է ՇԵՂՎԵԼ ԵՐԹՈՒՂՈՒՑ...

«Ասուպով» թռչում էին Արմենն ու Ռ. Արմենը: Վերջապես նկատելով տագնապի այդ ազդանշանը, Արմանը վեր թռավ տեղից:

— Շո՜ւտ,— բղավեց նա:— Հարկավոր է գտնել նրանց:

Ռ. Արմանը փնտրիչով սկսեց հետախուզել շրջակայքը: Քիչ անց էկրանի վրա երևաց երկնաքարերով շրջապատված «Ասուպը»:

— Արմե՛ն,— գոռաց Արմանը միկրոֆոնի մեջ:— Ես «Թռչող Դելֆինն» եմ: Դու լսո՞ւմ ես ինձ:

— Լսում եմ, Արմա՛ն,— պատասխանեց հուզված ձայնը:

— Մենք օգնության ենք գալիս,— ասաց Արմանը:— Դիմացե՛ք մի քիչ:

— Ո՛չ մի դեպքում,— պատասխանեց Արմենը:— Երկնաքարի հարվածից մեր նավը կորցրել է կառավարումը: Ձեզ հետ էլ նույնը կարող է պատահել, եթե մտնեք երկնաքարերի շրջանը: Դա շատ վտանգավոր է...

— Նշանակություն չունի՛,— նորից գոռաց Արմանը:— Մենք գալի՛ս ենք: Դուք դիմացե՛ք...

— Ցտեսությո՛ւն ձեզ, վայրէջքի համար նախատեսված միավորնե՛ր,— ասաց Ռ. Արմանը, ձեռքը դնելով ղեկին:

— Ես քեզ միավորներ ցույց կտամ,— սպառնաց տղան:— Հիմա դրանց ժամանակը չէ...

Արմանների նավը սահուն շրջադարձ կատարեց ու մտավ երկնաքարերի հսկա խմբի մեջ: Չորս կողմում ամենուրեք քարեր էին թռչում: Նրանցից մի քանիսն այնքան մոտ անցան նավից, որ Արմանը նույնիսկ կծկվեց նստած տեղում: Շարունակ խուսանավելով, նա անընդհատ մոտենում էր ընկերոջ նավին, սակայն ճիշտ չէր հաշվել հետագիծը: Դա նախ Ռ. Արմանն զգաց:

— Մենք ուղիղ «Ասուպի» վրա ենք գնում,— վախեցած ասաց նա:

Արմանը նայեց ահռելի արագությամբ մոտեցող նավին: Նա փորձեց վերջին պահին խուսափել բախումից, բայց արդեն ուշ էր: Ուրիշ ավելի հարմար բան չգտնելով, նա փակեց աչքերը և միայն պայթյուն լսեց...

Պայթյունից հետո չորս կողմում ամեն ինչ փոխվեց, և, երբ Արմանը նորից բացեց աչքերը, նրանք արդեն նստած էին մեծ սրահի մի անկյունում: Նրանցից բացի սրահում նստած էին մրցույթին մասնակցող ուրիշ երկու զույգեր ևս, որոնք նույնպես որևէ կոպիտ սխալի պատճառով դուրս էին մնացել հետագա մրցությունից:

Սրահի մեծ էկրանին ցուցադրվում էր մյուս մասնակիցների պայքարի ընթացքը: «Ասուպը» շարունակում էր անվնաս թռչել և արդեն պատրաստվում էր վայրէջքի: Մի քանի րոպե անց նրանց մոտեցավ նավավարության ուսուցիչը:

— Դե՞, Արմա՛ն,— ժպտաց նա,— Ռ. Արմանը քեզ որևէ՛ բան սովորեցրե՞ց... Ստուգումը ցույց տվեց, որ դու կարող ես խիզախ նավորդ դառնալ: Օգնության նետվելու համար ամենաքիչ ժամանակը դու ծախսեցիր: Բայց միայն խիզախությունն ու ցանկությունը քիչ են: Ի՞նչ կպատացվեր, եթե այդ ձևով օգնության շտապեիր Տիեզերքում... Իսկ Ռ. Արմանը հենց նրա համար էր քեզ հետ, որպեսզի դու կարողանաս կողքից տեսնել ինքդ քեզ:

Արմանը գլուխը կախեց ու ոտքի ելավ: Ռոբոտի հետ նրանք դուրս եկան սրահից:

— Ոչինչ,— ասաց Ռ. Արմանը:— Ես էլ ճիշտ այնքան գիտելիքներ ունեմ, որքան դու...

— Մյուս տարի իմ կառուցած ռոբոտը քեզանից ավելի խելացի կլինի,— ասաց Արմանն ու ծիծաղեց:— Շատ խելացի կլինի...

— Դրա համար մյուս տարի դու պետք է այս տարվա համեմատությամբ շատ, ավելի՛ շատ գիտելիքներ ունենաս,— պատասխանեց Ռ. Արմանը:— Շա՛տ ավելի...

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



# ԻՆՉՈ՞Ւ ԱՄԵՆ ՏԵՂ ՁՄԵՌ ՉԻ ԼԻՆՈՒՄ

*ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ*

Մեծ չեմ, բայց փոքր էլ չեմ: Փոքր եմ իմ մեծերի մոտ՝ իմ պապի, իմ հոր, իմ ուսուցիչների մոտ, բայց շատերից էլ այնքա՜ն մեծ եմ... Ոչ ոք չի ուզում փոքր լինել, միայն շատ մե՜ծ պապիկներն են ուզում շատ փոքրանալ, դառնալ իրենց թոռնիկների չափ: Իսկ թոռնիկներն ուզում են մեծ լինել, գոնե այնքան մեծ, որ բակում ֆուտբոլ խաղան, խոսեն տիեզերքի ու տիեզերանավերի մասին: Ինչ վերաբերվում է ինձ՝ ես երբեք մեծ-մեծ բաներից չեմ բռնացնում: Ականջիս օղ եմ արել իմաստուն մի խոսք, հազար վերստ ճամփան էլ սկսվում է մարդու մի քայլից: Դրա համար կյանքում ամեն ինչ իր այբուբենն ունի:

Հիմա ինձ համար, իմ մտքում ցանկանում եմ տարվա եղանակները խոնարհել: Տարին գարնանից է սկսվում: Ոչ թե նոր տարին, այլ տարվա եղանակները: Իսկ գարունը սկսվում է մարտից: Մտքումս ասացի՝ գարուն: Այս ասելու հետ դեմս մի գարո՜ւն փռվեց՝ շարմաղ անձրևով, խոնավ բուրմունքներով, ձնծաղիկներով ու մանուշակներով, ծիածաններով ու կկվի կանչերով, ծառզարդարներով, յոթծալ երկինքներով, աղբյուրների երգերով, ծիծեռնակներով, արագիլներով... Գարնան համերգներից, զվարթ կանչերի բույլերից սիրտս խայտաց,, այն զգացի, որ չէ՛, ես եմ խոնարհվում գարնան առաջ: Չէ, գարունը խոնարհվող պտուղ չէ: Գարնան պտո՞ւղ: Գարնան ունեցածը ծաղկումն ու ծաղկունքն է: Պտո՞ւղ ես ուզում, գնա ամռան մոտ... Ահա ամառը, կանգնում է դեմդ՝ իր դեղին արտերով, լցված մարգերով, այգիների երգերով... Ահա և գալիս է ոսկով ծանծաքեռ աշունը, դաշտերին, աշխարհին խոնարհված աշունը:

Տարվա բոլոր եղանակները սկսվում են գարնանից, բայց որ ինձ մնա, կասեմ՝ սկսենք ձմռանից: Ճիշտ է, ձմեռը խոնարհվում է ձյան տակ ճկված ծառերով, երկնքով, բայց ամեն տեղ ձմեռ չի լինում: Կարող եմ մատներս ծալելով մեկ առ մեկ թվարկել, թե որ երկրներում է, որ ձմեռ չի լինում, ձյուն չի գալիս, մարդիկ այդտեղ ձյուն չեն տեսնում: Բայց եթե այդ շատ երկրները ձմեռ ու ձյուն չեն ունենում, ինչո՞ւ ունեն ձմռան ամիսներ՝ դեկտեմբեր, հունվար, փետրվար: Իմ հաշվապահ հայրը կասեր՝ տարվա հաշվեկշռի մեջ այդ ամիսները ավելորդ հաստիք են զբաղեցրել: Կասեր՝ երեք ամիս-հաստիք միավոր են զբաղեցնում տարվա ռռճկացուցակում, դրանց բերած ձյունը մի անգամ մարդ չտեսավ, բայց իրենք իրենց պահում են գարնան նման՝ աշխարհը ծաղկեցնում են, ամռան նման հոխացնում են, աշնան նման... Ինչո՞ւ ամեն տեղ ձմեռ չի լինում: Ախր, որ ձմեռ չլինի, մրսող աստղեր չլինեն, կաթկը-

*Վ. ՍՈՒԽՈՄԼԻՆՍԿԻ*

Ամռան մի շոգ օր ծույլը գնում է անտառ: Պառկում է ստվերոտ բացատում և փափուկ խոտերի վրա քնում:

Մինչ նա քնած էր, Արևը երկնակամարում երկար ճամփա անցնելով բարձրանում, հասնում է երկնքի ամենաբարձր կետին: Արևի ճառագայթները ընկնում են բացատի վրա: Ծույլն զգում է, թե ինչպես Արևը այրում է իր գլուխն ու ոտքերը: Ուզում է Ծույլը բարձրանալ, գնալ պառկել ստվերոտ զով կանաչի վրա, բայց ալարում է:

Եվ ասում է Ծույլը Արևին.

## Ի՞ՆՉՊԵՍ ԿԿՎՈ՞Ւ ՍՈՎՈՐԵՑ

Կկուն ուզեց սոխակի պես երգել: Թռավ գնաց ծեր, իմաստուն սոխակի մոտ:

Երկար, երկար դասեր առավ նրանից ու վերջապես սովորեց երգել իսկական սոխակի պես: Հետո վերադարձավ կկուների՝ իր եղբայրների ու քույրերի մոտ: Եվ սկսեց սոխակի պես երգել: Կկուները լսեցին նրան, զարմացան. հասարակ կկու է, բայց երգում է սոխակի պես:

Մեկ էլ որտեղից որտեղ թռավ կկվի մի փոքրիկ



## Ձ Մ

Ձմեռը նստեց մոտիկ քարափին,
Սառեց, ճերմակեց աղբյուրի շուրթը,
Մի գիշերվա մեջ ջրերի ափին
Ժանյակներ հյուսեց խստաշունչ ցուրտը:



## ԾՈՒՅԼՆ ՈՒ ԱՐԵՎԸ

— Արև՛, ա՛յն կողմ գնա, խնդրում եմ, ես շոգում եմ:

Արևը ծիծաղում է.

— Դա խելքի մոտ բա՞ն է, որ Արևը թեքվի այն կողմ, որ կողմ ծույլն ուզենա:

Ծույլը բարկանում է և բղավում.

— Չես ուզում գնա՞լ:

— Չեմ ուզում,— պատասխանում է Արևը:

— Դե որ այդպես է,— ասում է Ծույլը,— քո ինատու այստեղ պառկած էլ կմնամ...

## ՍՈԽԱԿԻ ՊԵՍ ԵՐԳԵԼ

հիմար ձագ, նստեց սոխակի պես երգող կկվի մոտ ու հարցրեց.

— Դու ինչո՞ւ կկվի պես չես երգում, չէ՞ որ դու կկու ես:

— Ես քեզ համար ի՞նչ կկու եմ, ես սոխակ եմ,— բարկացավ կկուն, այնպես բարկացավ, որ մոռացավ սոխակի լեզուն և խոսեց կկվերեն՝ կու-կու...

— Պոչի՜ն նայեցեք, պո՜չն էլ է կկվի,— հիասթափված ասացին կկուները:

*Նկ. ԳԱՅԱՆԵ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



*ՍԵՐՈ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆ*

Սարեր ու ձորեր ձմռան շոր հագան,
Ցրտահարվեց ու կարճացավ օրը,
Առուն մոլորվեց, պապանձվեց լռին,
Ջանձրույթը իջավ ու լցվեց ձորը:

թող ատտղերի վրա հաչող շներ չլինեն, ձյուն, սառցոտ ձյուն չլինի, առուները սառույցների տակ չերգեն, մրսկան գազանիկները գարուն, ամառ ու աշուն հիշելով վեր չթռչեն իրենց տաք երազներից, էլ ի՞նչ կյանք:

Որ մարդավարի ձմեռ է լինում, անհոգ-անհոգ թավալ ես տալիս ձյուների մեջ, ձնագնդի ես խաղում, սղղում ես սահնակով, դահուկ ես քշում: Իսկ ամենագլխավորը՝ ինչքան շատ ձյուն գա, ավելի հարուստ կլինի բերքը, ջրառատ տարի կլինի, Սևանը կսնվի նաև ձնաջրերով, մինչև Արփա գետն էլ հասնի... Չեմ հասկանում, թե իմ հաշվապահ հայրը ինչո՞ւ է մռայլվում, աչք-ունքերը խճճած թվեր է դարձնում ու շատ ծանր ասում է. «Անտեր ձմեռը երկարեց: Գարունը գար, էս անտեր ծանր վերարկուները հանեինք, շունչ քաշեինք»: Այ, պապիկս ուրիշ մարդ է: «Մի աննման ձմեռ էր, ձյունն եկել-դիզվել էր, կալ ու կապ էր ընկել ամեն ճամփա ու արահետ...» սկըսում է պատմել, ասես գրույցի հետ թեթև-թեթև ճամփա է բացում ու ես գնում եմ պապիս զրույցով բացած ճամփով: Գնո՛ւմ եմ, գնո՛ւմ եմ, գնո՛ւմ եմ... Գնալը քիչ է, ո՞վ չի գնում: Բայց ես թռչուններին եմ կեր տալիս, ասում եմ, որ ձմռան ցրտին թող չմոռանան գարնան՝ երգերը, բրդոտ ապոր ականջին ասում եմ՝ քիչ մնաց, հա՛, ա՛տնաշեն... Եղնիկին ասում եմ՝ դու միշտ էլ գեղեցիկ ես: Գիտես, եղնի՛կ, մենք՝ երեխաներս, եթե անտառ՝ ենք նկարում, սար ու ձոր, ապա չենք մոռանում նկարել նաև քեզ՝ աղբյուրից ջուր խմելիս, արածելիս, հպարտ-գեղեցիկ հեռուներին նայելիս... Նապաստակին ասում եմ՝ լավ ես անում, որ վազում ես դեպի վեր, տկտկալով վազում ես ու կորչում ձյուների մեջ, այնպես ես կորցնում-խճճում հետքդ, որ աղվեսին ու գայլին թվա, թե երազում են քեզ տեսել: Փայտփորիկին ասում եմ՝ ծառերի վրա նոտագրել միայն դու ես կարողանում...

Չէ, լավ ձմեռը լավ գարնան ու ամռան, լավ աշնանից պակաս հրապուրիչ չէ, նա իր ճերմակության մեջ այնքան գեղեցկություններ ունի թաքցրած, որ եթե իմանանք, կարող է և գարնանն էլ կարոտենք ձյուն ու ձմռանը: Կարելի լիներ մեր լեռնաշխարհի այս լավ ձյուն-ձմեռից ուղարկել բոլոր այն երկրները, որտեղ երեխաները ձմռան ամիսներ ունեն, բայց ձյուն ու ձմեռ չունեն: Ուրեմըն չունեն ձյունոտ հեքիաթներ, ձյունոտ երազանքներ, ձյունոտ պապիկներ, ձյուների տակ այրվող գարուններ ու աշուններ հուրհրան: Եվ մենք ամռան տժտժան շոգին սրտներս հովացնում ենք՝ նայելով մեր բարձրիկ սարերին նստած հավերժական ձյուներին: Իմ պապը ճիշտ է ասում՝ քո ունեցածից պետք է անխտիր բաժին հանես քո բարեկամներին, հարազատներին, բոլորին: Իսկ մեր աշխարհի վրա փռված ձյուն-ձմեռից բաժին չհանել անձյուն-անձմեռ երկրներում ապրող իմ հասակակիցներին, դա արդեն անկըշտություն է, ագահություն:

Ձմեռը երկնային պարգև է: Ինչո՞ւ ամեն տեղ ձմեռ չի լինում:

## ՍՐԱԳԻԼՆԵՐ

*ՋԱՎԵՆ ԿԱՍՅԱՆ*

**Սրագիլնե՜ր սպիտակ,**
**Դուք դեպի ո՞ւր գնացիք,**
**Աշունը ձեր թևի տակ՝**
**Դուք դեպի ո՞ւր չվեցիք...**
**Ո՞ւր գնացիք, ի՞նչ եղաք,**
**Արդյոք մեզ էլ չե՞ք հիշում,**
**Գնացիք՝ մեզ թողնելով**
**Ձմռան ճերմակ մշուշում:**
**Սրագիլնե՜ր մեր բարի,**
**Հիշում ենք ձեզ, կարոտում...**
**Կպահպանենք բույնը ձեր**
**Ու կսպասենք ձեր գալուն...**

## ԿՈՒԺԿՈՏՐՈՒԿԸ

*ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

**Ասում են, թե գյուղում մի հին**
**Ապրում էին մի մարդ, մի կին,**
**Ունեին մի կայտառ տղա**
**Ու մի աղջիկ՝ նորած լուսին:**
**Մի առավոտ գուժեց մի լուր.**
**«Պատերազմ է»...**
**Կռիվ տարան այն պատանուն,**
**Ու քույրիկը մնաց մենակ:**
**Գնաց տղան ու որպես հուշ**
**Իր քույրիկին թողեց մի կուժ:**
**... Օրեր անցան, կռիվն անցավ,**
**Սակայն տղան ետ չդարձավ:**
**Հեռվից եկավ մի երեկո**
**Գեղջուկ հայրը,**
**Աղջնակին ասաց՝ գնա՛**
**Մի պաղ ջուր բեր...**
**Կուժը առավ աղջիկը լուռ,**
**Վազեց աղբյուր ու լցրեց ջուր:**
**Ետ դառնալիս անզգույշը**
**Ձեռքից գցեց, կոտրեց կուժը:**
**Կուժը կոտրեց ու կարկամեց**
**Խորունկ ցավից,**
**Կժի կողքին կերպափոխվեց,**
**Դարձավ ծաղի՜կ...**
**Այն ծաղիկը, որ գիտեք դուք,**
**Այն ծաղիկը,**
**Որին կոչում եք կուժկոտրուկ:**




# ԱՆՀԱՏՆՈՒՄ ՍԵՐ

Լեռնցու պինդ կազմվածքով կին է, խիստ դիմագծեր ունի, վըստահ շարժումներ: Տարիքը... քառասունն անց է: Այդպիսի ավագ ջոկատավարի այնքան էլ հաճախ չես հանդիպի: «Պատվո նշան» շքանշանով պարգևատրված միակ ավագ ջոկատավարն է հանրապետությունում:

Տասը տարեկանից Հայկուշ Վարդանյանը աշնակցի իր 13 դասընկե՛րների հետ, օրը տաս կիլոմետր կտրելով, հարևան Սասնաշեն գյուղի դպրոցն է հաճախել: Այդ տարիքում արդեն պիոներական գործերի ակտիվ մասնակից էր, իսկ 8—10-րդ դասարաններում ջոկատային ջոկատավար դարձավ: Իններորդ դասարանի աշակերտ՝ նրան ընտրում են շրջկոմի պլենումի թեկնածու: Այդ նշանակում էր, որ նա ոչ միայն իր դպրոցի, այլև շրջանի աշակերտների հետաքրքրությունները ու շահերը պետք է ներկայացներ, լրացուցիչ պարտավորություններ կատարեր:

Ետպատերազմյան տարիներին ավարտում է դպրոցը, ապա ջոկատավարի դասընթացները և նշանակվում ՀԼԿԵՄ Թալինի շրջկոմի դպրոցական բաժնի վարիչ, ուր հինգ տարի աշխատում է նվիրվածությամբ ու սիրով:

Համաշխարհային 6-րդ փառատոնին մասնակցելու համար ժողովրդական ինքնագործ որևէ խումբ պետք էր ստեղծել, որը շըրջանային ու հանրապետական փառատոներում առաջին տեղը գրավելուց հետո, իրավունք ըստանար համաշխարհային փառատոնին մասնակցելու: Հայկուշ Վարդանյանը սասունցի ծերերից ու երիտասարդներից մի ինքնատիպ խումբ է կազմում, որը երկար ու յարված պարապմունքներից հետո, շրջանային ու հանրապետական փառատոներում առաջին տեղն է գրավում, այնուհետև մրցանակային տեղ է նվաճում նաև համաշխարհային փառատոնում:

Ժողովրդական պարի այդ խումբը մինչև օրս էլ գործում է, և իր առաջին մրցանակին նորանոր մրցանակներ, պատվոգրեր, պարգևներ է ավելացրել:

Այնուհետև աշխատանքի անցնելով Արտենի գյուղի դպրոցում իբրև ջոկատավար Հայկուշ Վարդանյանը մտնում է իր տարերքի մեջ:

— Ի՞նչ ենք երգելու,— առանց նախաբանի դիմում է նա միջանցքում իր շուրջն համախմբված երկրորդ դասարանցիներին:

Այս ասելն է լինում. փոքրիկները անմիջապես կողք-կողքի կանգնելով «Վարշավյանկա», «Թող լինի միշտ արևը», «Օրլյոնոկ» և մանկական ու պիոներական այլ երգեր են երգում: Երգը շատ է հարգի այստեղ: Պիոներական ու կոմերիտական երգչախմբերում 50 աշակերտներ են ընդգրկված և նրանք հաճախակի մրցանակներով ու պատվոգրերով են վերադառնում երգի փառատոներից ու տոնահանդեսներից:

Պիոներսենյակում եղած նյութերին մեր ծանոթությունն սկսում

ենք հացի պահպանությանը նվիրված միջոցառմանը վերաբերող հայտարարությունից: Պարզվում է, որ դրուժինան հաճախ է դիմում անցյալի դասերին: Տարվա ընթացքում մի քանի անգամ հացի պահպանմանը նվիրված միջոցառումներ է կազմակերպվում, վերջինը՝ «Գնահատիր ծնողիդ աշխատանքը, որով ստեղծվում է սուրբ հացը» խորագրով ցերեկույթն էր: Նախասովետական շրջանի հայ ականավոր գրող ու մանկավարժ Ալ. Ծատուրյանի խոսքերը, թե՝ երբ մեռնեմ, գերեզմանիս քարի վրա լոկ մի կտոր սև հաց դրեք, վրեն գրած՝ քաղցից մեռավ, ցնցող տպավորություն էր թողել երեխաների վրա:

Լենինգրադի պաշտպանների խոսքերը, պատերազմի տարիներին հացի վերաբերյալ եղած նամակներն ու նյութերը հանձնարարվել էր ընթերցել այն ծնողներին, որոնց երեխաները այնքան էլ խնամքով չէին վերաբերվում հացին: Հաջորդ օրվանից ցերեկույթի թողած ազդեցությունը նկատվում էր ոչ միայն դպրոցում կամ բուֆետում, այլ՝ ամբողջ ավանում: *

Դրուժինան անցած ուսումնական տարվա իր բոլոր աշխատանքները նվիրեց Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հոբելյանին: Դրանցից է գյուղի պատմության ուսումնասիրությունը, որի մեջ համոզիչ կերպով արտացոլված է հեղափոխությունից հետո գյուղում կատարված մեծ առաջընթացը: «1951 թվականի ապրիլի 9-ին, աշխարհի լավագույն պեղիտներից մեկը պարունակող Արտենի լեռան ստորոտում փորվեց այսօրվա Արտենի գյուղի առաջին տան հիմքը: Հին հայկական ավանդությամբ՝ հիմքի մեջ «Ընտիր» կոնյակ դրին ու մի քանի արծաթե դրամ, որ հարուստ ավան դառնա, իսկ մարդիկ խաղաղ ու երջանիկ ապրեն: Անցան տարիներ և երբեմնի փուշ ու տատասկի, քար ու ավազի, օձերի ու կարիճների տիրույթում տարածվեց մի բարեկեցիկ ու բարետես ավան...»

Այժմ այդ ավանը երկու դպրոց ունի, երկու մանկապարտեզ, գինու մշակման երկու գործարան, կուլտուրայի տուն, խանութներ ու սպասարկման այլ կետեր:

Նախորդ տարիների համեմատությամբ դրուժինան «Ապրիր՝ գիրք» օպերացիայի ուղղությամբ նույնպես լուրջ առաջխաղացում է արել: Տարեվերջին դասագրքերի փոխանակումը աշակերտների ներկայությամբ են կատարում: Ով մեկ անգամ կարմրել է վատ վիճակում գիրք հանձնելու համար, երբեք ցանկություն չի ունենա նման դրության մեջ ընկնել երկրորդ անգամ:

— Անհատնում է ձեր եռանդը, ընկե՛ր Հայկուշ, քառորդ դարից ավելի ավագ ջոկատավար եք,— երբեմն ասում են նրան:

— Ուզում եք ասել, որ տեղս ուրիշին զիջելու ժամանա՞կն է,— ոչ, չեմ գնա, մինչև պատիկ աղջիկս ինձ փոխարինելու չգա,— կատակի է տալիս նա:— Հաճախ եմ ինքս ինձ հարցնում, թե այդ ինչպես է լինում, որ մեկ-երկու տարի աշխատելուց հետո ձանձրանում, թողնում են ջոկատավարի աշխատանքը: Կուզենայի, որ մեկն օգներ ինձ իմ աշխատանքին սիրահարված լինելուց ազատվել: Ա՜խր, շատ եղավ է, քառասունս անցել է, չորս երեխաներ եմ մեծացրել, մեկն էլ շուտով ինստիտուտը կավարտի, իսկ ես շարունակում եմ սիրահարված մնալ դպրոցական տարիներից սկսած աշխատանքին...

ՎԱՀԱՆ ՄԽԱԿՅԱՆ





Վ. ՋԵՏԿԱՐՅՈՎ

## ԱՐԵԳԱԿԻ՛Ն ԼԾԵՑԻ՛Ն

*Տաշքենդում մի զարմանալի տուն է հայտնվել. դրսից էլեկտրական լարեր չեն ձգվում դեպի նա, ոչ էլ ներսում սովորական շոգեջեռուցման սարք կա: Բայց հարցրեք տան ինը բնակարանի բնակիչներին՝ նրանք ոչնչից զրկված չեն: Որպեսզի ձմռանը տաք լինի, իսկ ամռանը՝ չափավոր հով, հոգում է... արեգակը:*

*Ամռան ամիսներին արեգակը ստիպում է աշխատել պատերի մեջ թաքցրած հատուկ սառնարաններին: Միևնույն սարքերը ձմռան սառնամանիքին որսում են յուրաքանչյուր շող՝ որպեսզի բարձրացնեն սենյակների ջերմությունը:*

*Ցուրտն էլ, տաքն էլ կուտակվում են տան պատերի ներսում, ահա թե ինչու այնտեղ կլոր տարին ջերմաչափը միևնույն աստիճանն է ցույց տալիս:*

*Հիմա կհարցնեք. իսկ ինչպե՞ս է լույսի հարցը: Մեր լուսատուն այդ էլ է տալիս, անգամ եթե հորիզոնի հետևում է գտնվում: Տան կտուրը արեգակնային մի հսկայական մարտկոց է, որը ցերեկը էներգիա է կուտակում, իսկ գիշերը՝ տալիս:*

*Եկեք ընդունենք, որ արեգակին անսովոր պարտականություններ պարտադրողը Ուզբեկստանի ակադեմիայի գիտնականներն են:*



Բայց սա դեռ բոլորը չէ: Այս շենքում տանտիկինները իրենց կերակուրը պատրաստում են արեգակնային խոհանոցներում: Ամեն պատուհանի առջև մի մեծ գոգավոր հայելի կա: Այն խոշորացնող ոսպնյակ է հիշեցնում՝ մի կետում է հավաքում արեգակի ճառագայթները: Հրաշք-վառարանը միանում է՝ հենց որ երկրի վրա երևում է Արեգակը: Ըստ որում վառարանն աշխատում է նույնիսկ հունվարյան ժլատ շողերի տակ, երբ դրսում 20° սառնամանիք է: Միևնույն է, տաքությունն ավելի պակաս չէ, քան գազօջախի վրա:

Բայց եկեք վառարանից հանենք կաթսաներն ու թավաները: Փոխարենը հայելու առաջ կիսահաղորդիչ բյուրեղներով պատած մի գլանիկ տեղավորենք: Ի՞նչ ստացվեց: Արեգակնային մարտկոց: Ինչքան արեգակը վառ է լուսավորում, այնքան շատ հոսանք է արտադրվում: Ձեռը սրան նույնիսկ տրանզիստորային ընդունիչ, էլեկտրաածելի կարելի է միացնել:

Հայելի-էլեկտրակայանը, խորհուրդ են տալիս, իրենց հետ վերցնել նաև տուրիստական երթերի ժամանակ: Անդադար աշխատելով, այն ձեզ շոգ եղանակին կպահպանի արևի կիզիչ ճառագայթներից: Անձրևի դեպքում «հովանոցը» պետք է շրջել: Իսկ եթե նրան բրեզենտե ծածկոց ամրացնես՝ գիշերային հանգստի համար հարմար վրան կդառնա:

Էլ ի՞նչ «աշխատանք» ասես չեն հանձնաբարել արևին:

Մեր երկրի հարավում արեգակը գետնի տակից ջուր է դուրս մղում, ինքն է ջրում դաշտերը և նույնիսկ... մետաղներ է ձուլում: Այո՛, այո՛, վաթսուն մետրանոց հայելի-խտացուցիչը մի քանի հազար աստիճանի ջերմություն է կուտակում: Այդպիսի ջերմությանը նույնիսկ ամենադժվար հալվող մետաղը չի դիմանում:

Կաթսայի մեջ կենտրոնացրած արեգակնային ճառագայթը ջուրը հեշտությամբ շոգու է փոխարկում: Եվ այդ շոգին աշխատեցնում է տուրբինը՝ սա էլ իր հերթին շարժում է էլեկտրագեներատորը: Այսպիսով մենք արտակարգ էժան էլեկտրաէներգիա ենք ձեռք բերում: Դրա համար այլևս պետք չէ ուրան արդյունահանել, գետերը ամբարտակել, հնոցներում նավթ կամ ածուխ այրել, աղտոտելով օդը:

— Մարդիկ գիտակցեցին, որ էներգիայի երկրային աղբյուրները անսպառ չեն,— պատմում է Թուրքմենական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Վալենտին Ալեքսեևիչ Բաումը:— Արդեն հիմա գիտնականները խոսում են էներգետիկայում «արեգակնային դարագլխի» մասին: Մեր լուսատուի շռայլությունը ոչնչի հետ չի կարելի համեմատել: Իր մասշտաբներով այդ պարգևը 35 հազար անգամ գերազանցում է մարդկության էներգետիկ պահանջները:

Արեգակնային էլեկտրակայանները տեղ կգտնեն տափաստաններում, լեռներում և, իհարկե, տիեզերքում: Չէ՞ որ արեգակը գերազանցորեն արդարացրեց իրեն՝ շարժման մեջ դնելով այնպիսի մի ապարատ, ինչպիսին լուսնագնացն է: Սովետական ինժեներները արդեն երկրի սահմաններից դուրս օպտիկական հսկայական սիստեմներ ստեղծելու գաղափար են հղացել, սիստեմներ, որոնք լազերային սարքավորումների միջոցով կհավաքեն արեգակի ճառագայթները և դրանք կհաղորդեն մեզ:

## ԱՍՏՂԸ՝ ԿՈԼԲԱՅԻ ՄԵՋ

Իսկ չի՞ կարելի արդյոք ուղղակի լաբորատորիայում կայուն, չհանգչող արեգակ ստեղծել, անկախ գիշեր ու ցերեկից և եղանակի քմահաճույքներից: Այդ մասին սկսեցին մտածել գիտնականները: Ճիշտ է «արեգակիկը» փոքր կլինի, բայց անգնահատելի օգուտ կտա:

Եվ ի՞նչ. այդպիսի արեգակ մեր երկրում կառուցվում է: Մեքենան, որն ի վիճակի է էներգիա արտադրել այն ձևով, ինչպես ստացվում է աստղերում, կոչվում է «Տոկամակ»:

Կոնստրուկցիան վերևից հսկայական, սնամեջ մի օղաբլիթ է հիշեցնում: «Օղաբլիթի» կամերայում էլ հենց գտնվում է «աստղանյութը»՝ երկու գազերի՝ ջրածնի և դեյտերիայի խառնուրդը: Որպեսզի «աստղը» բոցավառվի, գազերը պետք է այնպիսի գերուժեղ հոսանքով տաքացնել, որի ջերմաստիճանը հասնի 100 միլիոնի, պատկերացնո՞ւմ եք ինչպիսի հնոց կլինի:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Սպասեցեք, կասի ընթերցողը, բայց չէ՞ որ «աստղային» հնոցը նույնիսկ քարը մի ակնթարթում շոգի կդարձնի: «Օղաբլիթը» կայրվի: Ճիշտ է: Միայն ամեն մի նյութ այդ ջերմաստիճանի տակ ոչ թե շոգու, այլ պլազմայի կփոխվի:

Հենց դրա համար էլ, որպեսզի պլազման չայրի իր շրջապատը, նրան վերցնում են մագնիսական թակարդի մեջ: Այսպես կոչված «օղաբլիթը» ամբողջությամբ վերցվում է օղակավոր մագնիսական դաշտի մեջ:

*Նախանցյալ տարվա վերջին, «Տոկամակ» մեքենայի սարքավորումը շարք մտավ Ի. Վ. Կուրչատովի անվան Ատոմային էներգիայի ինստիտուտում: Արհեստական արեգակն այնտեղ, ո՛չ, դեռ չի վառվում: Բայց «աստղային» ջերմամիջուկային ռեակցիայի առաջին նշանները գիտնականներն արդեն տեսան:*

*Մշտապես պայթող ատոմային ռումբին հավասար հզորությամբ «Տոկամակի» սարքավորումը նրանով է աչքի ընկնում, որ նրա մեջ տեղի ունեցող միջուկների տրոհման ռեակցիան մշտապես՝ գտնվում է մարդու անընդմեջ հսկողության տակ:*

*Գիտնականների հաշվումներով «Տոկամակ»-ի համար վառելանյութը կբավականացնի միլիոնավոր տարիներ: Միջուկային ֆիզիկայի մասնագետները հույս ունեն, որ «Կոլբայի մեջ աստղը» նրանց կհաջողվի ստանալ արդեն տասներորդ հնգամյակի վերջին:*

## ՀՈՍԱՆՔԸ ԼՈՒՍՆԻՑ Է ԳԱԼԻՍ

*Այո, կմտածեք, սա արդեն հնարավոր չէ: Հնարավոր է: Երկրագնդի հավիտենական ուղեկցի՝ Լուսնի պտույտները ծովում մակընթացություններ և տեղատվություններ են առաջացնում: Իսկ դրանք կարող են տուրբիններ պտտեցնել: Դա է ապացուցում Սպիտակ ծովում կառուցված առաջին մակընթացային էլեկտրակայանը:*

*Այն ջերմանավ է հիշեցնում: Կառուցված է ուղղակի Մուրմանսկի նավահանգստի նորոգարանում: Ամեն ինչ այնքան պարզ ու օգտավետ ստացվեց, որ ավելի հզոր կայանի կառուցման որոշում ընդունվեց:*

*Ի միջի այլոց հոսանք կարող են տալ նաև սովորական ալիքները: Նրանց հավիտենական պարն արդեն օգտագործվում է Նովոռոսիյսկի էներգետիկների կողմից՝ լողացող փարոսներին սնելու նպատակով:*

*Տարբեր երկրների ինժեներներն իրենց նախագծերն են ներկայացնում մարդկությանը էներգետիկ սովի վտանգից փրկելու նպատակով: Ենթադրվում է օգտագործել հրաբուխների, երկրաշարժների, կայծակների էներգիան:*

*Մարդիկ երազում են նույնիսկ բույսերից էլեկտրականություն «հանել»: Միտք է ծագել նույնիսկ երկրագունդն օգտագործել որպես հավիտենապես պտտվող տուրբին:*

*Ո՞վ գիտե, գուցե մեր ընթերցողներից ոմանք ականատես կլինեն այսօրվա համար ֆանտաստիկ թվացող այս նախագծերի իրագործմանը, իսկ, գուցե և որևէ մեկը նրանցից ինքը կստեղծի դրանք:*

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*



ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ



# ԱՅՆ, ԻՆՉ ՉԷՐ ԱՐԵԼ ՖԱՐԱԴԵՅԸ, ԱՐԵՑ ՄԱՔՍՎԵԼԸ

Գիտելիքների պակասը լրացնելու համար, Մաքսվելն ակադեմիայից փոխադրվում է Էդինբուրգյան համալսարան, ապա՝ Քեմբրիջ, և ուսումը շարունակում այն քոլեջում, ուր սովորել էր Նյուտոնը:

Քոլեջում դասավանդվող մաթեմատիկայի մակարդակը ապշեցրեց նրան: Այդպիսի անակընկալը հաճելի էր, մնում էր յուրացնել դասընթացը: Իսկ յուրացման պրոցեսը շատ կարճ տևեց. Ջեյմսը գրեթե ակնթարթորեն կլանեց բարձրագույն մաթեմատիկան:

Քոլեջում դժբախտաբար վատ հիմքերի վրա էր դրված ֆիզիկան, դասախոսները գտնում էին, որ այն ավարտված է և ոչինչ հնարավոր չէ ավելացնել, «բնության բոլոր իրերն ու երևույթները արդեն հայտնի են, իսկ նրանց էությունը՝ պարզ»:

Մաքսվելը չէր վիճում, և դա չէր նշանակում, թե նա բաժանում է դասախոսների կարծիքը: Քոլեջյան տարիներին նա ծանոթացավ Ֆարադեյի գործունեությանը. «Էլեկտրականության փորձարարական հետազոտություններ» գիրքը դարձավ նրա ուղեկիցը: Քսանամյա Ջեյմսը ի վերջո հանդիպեց իր հասակակցին՝ Ֆարադեյի հայտնագործած ինդուկցիայի օրենքին: Հանդիպեց և քարացավ: Մեկը մյուսին հաջորդած նրա դատողությունները վերջապես բերին այն կարծիքին, որ ֆիզիկայի տարբեր բնագավառներում մինչ այդ կատարած իր հայտնագործությունները պետք է դառնան այն մեծ գործի նախաբանը լոկ, որին մղում էր Ֆարադեյը:

Իսկ ի՞նչ հայտնագործություններ էր կատարել ինքը մինչ այդ:

Հայտնագործել էր հոլը և ուսումնասիրել նրա պտտման առանձնահատկությունները: Հետաքրքիրն այն էր, որ հոլը ներ-

[1] Սկիզբը «Պիոներ» № 9, 1977 թ.

կելով տարբեր գույներով և պըտտեցնելով իր առանցքի շուրջը, ականատես էր եղել տարօրինակ երևույթների: Եթե կրկնենք Մաքսվելի փորձը, հուլը ներկենք, օրինակ, կարմիր ու դեղին և պտտենք, ապա մեզ կթվա նարընջագույն, իսկ կապույտ և դեղին ներկելու դեպքում՝ կանաչ: Սա դեռ բոլորը չէ. երբ նա ներկեց ծիածանի յոթ գույներով և պտտեց, հուլը թվաց սպիտակ: Այս օպտիկական «խաբկանքը» իր մեջ գաղտնիքներ ուներ, որի բացահայտելը նույնքան ջանք պահանջեց, որքան ծիածանի էության բացահայտումը: Այս երևույթը կոչեցին պրիզմայի վրա ընկած սպիտակ լույսի տարրալուծման հակառակ պրոցեսն ամփոփող երևույթ («Մաքսվելի սկավառակ»): Նա գտավ թերմոդինամիկական պարադոքսը, որը երկար տարիներ հանգիստ չէր տալիս ֆիզիկոսներին:

Շուտով նրա անունը հայտնի դարձավ նաև աստղագետներին: Սատուրնի մոլորակի օղակների կայունության խնդրին նվիրված նրա ուսումնասիրությունն արժանացավ մեծ պարգևի և բերեց «մաթեմատիկական ֆիզիկայի առաջատար»-ի համարում:

Գնալով այնքան ընդլայնվեց Մաքսվելի ուսումնասիրությունների ոլորտը, որ իր մեջ ընդգրկեց կենդանական բնույթի այնպիսի հայտնագործություններ, ինչպիսիք էին հագուստի քիմիական մաքրումը ժամանակակից իմաստով, աշխարհում առաջին գունավոր լուսանկարի ստեղծումը և այլն:

Թվարկած հայտնագործություններից և ոչ մեկը չի կապվում Մաքսվելի անունը հավերժացնող այն ամբողջական բնագավառների հետ, որոնք վավերացվեցին «Մաքսվելի հավասարումներ», «Մաքսվելի էլեկտրոդինամիկա», «Մաքսվելի հոսանք» խորագրերով: Եթե սրբան ավելացնենք նաև այն, որ Մաքսվելի անունով է կոչվում մագնիսական հոսանքի CGS համակարգի միավորը, ապա պարզ կդառնա, որ Մաքսվելի գիտական կենսագրության միջուկն են կազմել էլեկտրադինամիկան և էլեկտրամագնիսական դաշտի տեսությունը: Մինչմաքսվելյան էլեկտրաֆիզիկայում արդեն քաղաքացիություն էր ստացել ֆրանսիական ընտրանու (Կուլոն, Ամպեր, Արագո, Բիո, Սավար, Լապլաս) առաջ քաշած «հեռազդեցության տեսությունը»: Ըստ այդ տեսության, մի մարմինը մյուսի վրա ցանկացած հեռավորությունից կարող է ազդել ակնթարթորեն, ընդ որում այդ ազդեցության մեջ միջավայրը դեր խաղալ չի կարող:

Ֆարադեյի տեսակետը բոլորովին այլ էր: Նա համոզված էր, որ «մատերիան չի կարող գործել այնտեղ, որտեղ չկա», ուրեմն տարածության մեջ էլեկտրական և մագնիսական փոխազդեցությունները կետից կետ փոխանցելու համար անհրաժեշտ է ինչ-որ նյութական միջավայր: Այդ միջավայրը նա կոչեց «դաշտ» կամ որ նույնն է, մագնիսական և էլեկտրական ուժագծերով ընդելուզված տարածություն: Ուժագծերը տեսանելի դարձնելու համար Ֆարադեյն առաջարկում է կատարել պարզունակ փորձ. թղթի վրա լցնել երկաթի խարտվածք և պահել մագնիսի վրա: Այնտեղ, ուր մաթեմատիկա լավ իմացող ֆրանսիացի գիտնականները տեսան դատարկություն, Ֆարադեյը տեսավ նյութական դաշտ: Այնտեղ, ուր նրանք բավարարվեցին ուժի բաշխման օրենքով միայն, Ֆարադեյը գտավ երևույթների իսկական էությունը:

Երևի, ինչպես գրում է Մաքսվելը, Ֆարադեյի մաթեմատիկա լավ չիմանալը բախտավորություն էր գիտության համար, թե չէ կփորձեր խորանալ իր հայտնագործած երևույթների մաթեմատիկական ձևակերպումների գեղեցկության մեջ և կրներ ֆրանսիացի ֆիզիկոսների ճանապարհը:

Այն, ինչ չէր արել Ֆարադեյը, արեց Մաքսվելը: Ֆարադեյի գաղափարներն ստացան բացառիկ մաթեմատիկական ձևակերպումներ:

Ռոբերտ Միլիկենի արտահայտությամբ «Ֆարադեյի պլեբեյական մերկություն ունեցող ենթադրությունները հագան մաթեմատիկայի ազնվական հագուստը»:

Եվ այսպես, ինչպես փորձառական, այնպես էլ տեսական ճանապարհով հերքվեց հեռազդեցության գաղափարը:

Էլեկտրամագնիսական դաշտի մաքսվելյան տեսությունը ամփոփվեց Մաքսվելի «Տրակտատ էլեկտրականության և մագնիսականության մասին» աշխատության մեջ: Մի գիրք, որը հասկանալի էր միայն մասնագետներին: Մաքսվելը որոշեց իր աշխատությունը հանրամատչելի դարձնել: Որոշեց և անցավ գործի, սակայն շուտով վրա հասավ անբուժելի հիվանդությունը:

... 1879-ի նոյեմբերի 5-ին, քառասունութամյա հանճարը հանգավ:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



# ԱՇԽԱՐՀԻ ՕՐԱՑՈՒՅՑՆԵՐԸ



Արևադարձային տարվա տևողությունը մարդկությանը հայտնի է. 365 օր, 5 ժամ, 48 րոպե և 46 վայրկյան: Այն հանգամանքը, որ տարին չի բաժանվում ամբողջական օրերի, անհիշելի ժամանակներից մարդկանց առջև դրել է մի բարդ խնդիր, որը մինչև այսօր անլուծելի է մնացել: Նախնադարյան և հնագույն ժամանակների մարդու համար եղանակների կրկնությունը երկարատև երևույթ էր, հաշվելու իր կարողությանը անմատչելի, ուստի բավարարվել է ժամանակը չափել ավելի հեշտ նկատելի մի ցիկլով՝ Լուսնի կերպարանափոխություններով:

Մարդկության առաջին օրացույցները եղել են ամսըվա, դրանցից մենք ժառանգել ենք տարվա բաժանումը ամիսների, ինչպես նաև օրերի խմբավորումը շաբաթների: Լուսնի կերպարանափոխությունը ունի մոտավորապես քսանիննուկես օրվա տևողություն, այնպես որ մեջ ընդ մեջ 29 և 30-օրյա ամիսները գըրեթե ճշտությամբ արտացոլում էին Լուսնի ցիկլը: Լուսնամիսը, բնականաբար, սկսվում էր նորալուսնով:

Մարդկանց մոտ տարվա գիտակցությունը ավելի ուշ է ծագել: Հավանաբար քաղդեացիներն են առաջին անգամ օրացույցը դասավորել Լուսնով և այնուհետև համապատասխանեցրել Արեգակի «պըտույտներին»: Նրանք ընդունել են 30-ական օրից կազմված 12 ամսվա տարի, բայց նկատելով, որ դա շատ կարճ է, յուրաքանչյուր վեց տարում ավելացրել են մի տասներեքերորդ ամիս, այսինքն միջին հաշվով, մեկ տարին ստացվել է 365 օր, վերջապես ավելի երկար ժամանակաշրջաններում մի, լրացուցիչ տասնչորսերորդ ամիս ծածկել է մնացած բացը:

Մ. թ. 4000 տարի առաջ քաղդեացիները ամիսը բաժանել են յոթ օրից բաղկացած 4-ական խմբի, իսկ այդ օրերը անվանել են անզեն աչքով տեսանելի երկնային յոթ մարմինների անունով. Արեգակ, Լուսին, Մարս, Մերկուրի, Յուպիտեր, Վեներա և Սատուրն: Ամսվա ավելացած երկու օրը դուրս է մնացել շաբաթվա կազմից: Քաղդեացիները միաժամանակ օրը բաժանել են 24 ժամվա, ժամը՝ 60 րոպեի, րոպեն՝ 60 վայրկյանի:

Քաղդեական տարին սկսվում էր աշնանային, իսկ հետագայում՝ գարնանային գիշերահավասարին, բայց տարին 360 օր հաշվելու պատճառով մեծ չափերով խախտվում էր տարեսկիզբը, վեց տարում տարբերությունը հասնելով մի ամսի: Սակայն դա Միջագետքի կլիմայական պայմանների համար այնքան էլ խանգարիչ չէր: Այլ նշանակություն ուներ այդ հարցը Եգիպտոսի համար, որի ողջ տնտեսական կյանքը, կապված էր Նեղոսի ջրերի վարարման հետ, և կենսականորեն անհրաժեշտ էր կայուն թվականներ ունենալ: Ուստի եգիպտացիք սահմանում են 365 օրվա տարին, քաղդեական 12 ամիսներին ավելացնելով հինգ, այսպես կոչված, լրացուցիչ օր: Հետո նրանք նկատում են, որ յուրաքանչյուր չորս տարին մեկ անհրաժեշտ է լինում ավելացնել ևս մեկ օր՝ վեցերորդը: Բայց կրոնական արգելքների պատճառով հրաժարվեցին այդ օրից: Դրա հետևանքով, Նեղոսի վարարման սկիզբը չէր կրկնվում ամեն տարվա նույն օրը:

Մինչհուլիոսյան հունական և հռոմեական օրացույցները շատ ավելի քիչ կատարելագործված լինելով եգիպտականից, միայն պատմական նշանակություն ունեն: Հայիվ 46 թվականին (մ. թ. ա.) Հուլիոս Կեսարը պարտադրեց լրացուցիչ վեցերորդ օրը յուրաքանչյուր չորս տարին մեկ անգամ, այն տեղադըրելով մարտ ամսից առաջ, միաժամանակ տարեսկիզբը փոխադրելով հունվարի 1-ը:

Հետագայում տարեսկիզբը տարբեր երկրներում փոխեց իր տեղը օրացույցում: Ռուսաստանում նոր տարին սկսվում էր մարտի 1-ին, Կոստանդնուպոլսում՝ սեպտեմբերի 1-ին: Ֆրանսիայում հունվարի 1-ը վերջնականապես հաստատվեց միայն Կարլ IX-ի հրա-

Նկ. ՌՈՒԲԵՆ ԹՈՒՄԱՍՅԱՆԻ



վարտակից հետո՝ 1564 թվականին: Մեծ Բրիտանիայում ամանորը մնաց մարտի 25-ը մինչև 1751 թ.:

Հուլիոսյան տարին երկար էր ավելի քան 11 րոպեով: Կամաց-կամաց գիշերահավասարը վզալիորեն փոխեց իր տեղը, և դեռևս 13-րդ դարում, երբ տարբերությունը միայն յոթ օր էր, շոտլանդացի մի կուսակրոն՝ Ջոն Հոլիվուդը, առաջարկեց փոփոխություն մտցնել օրացույցում, բայց դա ի վերջո կիրառվեց Գրիգոր 13-րդ պապի կողմից, որը 1582 թվականին կրճատեց տաս օրը: Գիշերահավասարը մարտի 11-ից տեղափոխեց մարտի 21-ը: Միաժամանակ նա օրենք սահմանեց, որ որոշ հարյուրակային տարիներ (1700, 1800, 1900, 2100...) չպետք է նահանջ տարի համարվեն, եթե բաժանելի չեն 400-ի: Այս ռեֆորմը դանդաղորեն կիրառվեց: Բողոքական երկրները, ինչպես Վոլտերն էր ասում, նախընտրում էին «արեգակի հետ համընթաց չլինել, քան համաձայնել Հռոմին»: Մեծ Բրիտանիան հազիվ 1752 թվականին ընդունեց նոր օրացույցը, ամանորն էլ փոխադրելով հունվարի 1-ին, ցարական Ռուսաստանը երբեք չընդունեց այդ ռեֆորմը:

Գրիգորյան օրացույցով տարվա միջին տևողությունն է 365 օր, 5 ժամ, 49 րոպե, 12 վայրկյան. միայն 26 վայրկյանով ավել, քան արևադարձային տարին: Այս օրացույցի մի ցիկլում 10871 շաբաթ (4 դար) տարբերությունը հազիվ կկազմի 3 ժամ: Բայց ինչպիսի հաշվառում էլ կատարվի, միևնույն է՝ ճշգրիտ չի լինելու, քանի որ արևադարձային տարին էլ իր հերթին փոփոխվում է, յուրաքանչյուր հարյուրամյակում փոքրանալով 0,45 վայրկյանով:

Այնուամենայնիվ, այժմ էլ, կրոնական կամ այլ նկատառումներով, տարբեր ժողովուրդներ ունեն տարբեր օրացույցներ: Ժամանակակից չինական օրացույցները Գրիգորյան թվագրության կողքին անպայման նշում են ազգային հին տարեթիվը, հիմնված լուսնամսի օրացույցի վրա: Չնայած մ. թ. ա. 2637 թվականին չինական մի հրովարտակ հաստատել էր արդեն տարվա 365 ¼ օրվա տևողությունը, բայց ինչպես ժամանակին եգիպտացիք, Չինաստանում նույնպես նախընտրեցին չխախտել ավանդական օրացույցը:

Եբրայական օրացույցը շատ մոտ է քաղդեականին լուսնա-արեգակնային սկզբունքով է: Դրա Լուսնի ցիկլով դասավորված 29 և 30 օրական տասներկու ամիսը ժամանակ առ ժամանակ (7 անգամ 29 տարում) լրացվում է մի հավելյալ 13-րդ ամսով: Մուսուլմանական տարվա տասներկու ամիսները ամփոփում են 354—355 օր: Այս օրացույցը լրիվ անտեսում է Երկրի պտույտը Արևի շուրջը և տարին կարող է սկսվել բոլոր եղանակներին, 33 տարին մեկ անգամ այն համարյա համընկնում է Գրիգորյան նոր տարվա հետ: Տարվա կարևորագույն թվականը Ռամազան ամսվա սկիզբն է (պասի մի ամիս), որն ըստ Ղուրանի կարող է սկսվել միայն, երբ Լուսինը տեսանելի է պարզ աչքով, այնպես որ այն չի կարող միաժամանակ սկսվել, ասենք, Մարոկկոյում և Մերձավոր Արևելքում:



Չնայած իր կատարյալ լինելուն, Հուլիոսյան-Գրիգորյան օրացույցը, այնուամենայնիվ, դժգոհություններ է առաջացնում: Նախ՝ թվականները կայուն օրեր չունեն, օրինակ, այս տարի ամանորը չորեքշաբթի օրն է ընկնում, եկող տարի՝ հինգշաբթի, հաջորդ տարին ուրբաթ և այլն:

Երկրորդ՝ նահանջ տարիներին մեկ օր ավելանում է: Երրորդ՝ եռամսյակները հավասար չեն (90- 91, 92 օր), և սա դժվարությունների առաջ է կանգնեցնում արդյունաբերական և ֆինանսական հիմնարկներին:

Այս պատճառով էլ տարիների ընթացքում բազմիցս բարեփոխումների առաջարկություններ են արվել, բայց հակառակվել են դրանց առաջին հերթին կրոնական մարմինները: Վերջապես, երկարատև որոնումներից և հաշվումներից հետո, գտնվեց մի ձև, որը չի փոխում շաբաթվա յոթ օրերի կապը և որը գուցե ներկայացվի ՄԱԿ՝ քննարկման: Այս նախագիծը պահպանում է տարվա 12 ամիսը, առաջին չորսը՝ 30-ական, հաջորդ չորսը՝ 31-ական, իսկ մնացած չորսը՝ էլի 30-ական օր, ընդամենը՝ 364 օր: Որպեսզի օրացույցը համապատասխանեցվի երկրագնդի շուրջարեգակնային պտույտին, վերացվում է նահանջ տարիների ավելորդ մեկ օրը, բայց 5—6 տարին մեկ անգամ ավելացվելու է լրացուցիչ մեկ շաբաթ, 28 տարվա ընթացքում ավելորդ շաբաթը օրացույցում տեղ կգտնի հինգ անգամ:

Տ. ԴԱՐԲԻՆՅԱՆ





# ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկարիչ Ալեքսանդր Գրիգորյանը վաղուց ի վեր աշխատակցում է մեր ամսագրին: Մեր ամսագրի համար արած նրա ձևավորումները, ինչպես և նրա գեղանկարչական ստեղծագործություններն ամբողջությամբ, միշտ աչքի են ընկել կատարման վարպետությամբ, կյանքը պատկերելու բանաստեղծականությամբ, վառ գույներով ու հուժկու վրձնահարվածներով:

Տարիներ առաջ, երբ ես առաջին անգամ տեսա Ալեքսանդր Գրիգորյանի գեղանկարչական ու գրաֆիկական ստեղծագործությունները, հիացմունքի հետ կարմանքի պահեր ունեցա, այնքան որ տպավորիչ էին:

Այն ժամանակ մտքովս չէր անցնում, որ հնարավոր է դրանից ավելի գեղանկարչական և գունային հնչեղության հասնել, որին հասել է նա այսօր:

Այսօր Ալեքսանդր Գրիգորյանը համարվում է մեր հանրապետության ճանաչված գեղանկարիչներից մեկը, նրա ստեղծագործություններին արվեստասերները ծանոթ են մեր հանրապետության ու մեր երկրի սահմաններից դուրս:

Նկարիչ Ալեքսանդր Գրիգորյանը օժտված է նաև գրական ձիրքով: Ֆրանսիացի նշանավոր նկարիչ Էժեն Դելակրուայի կարծիքով տաղանդավոր նկարիչը պիտի որ նաև տաղանդավոր գրող լինի:

Ալեքսանդր Գրիգորյանի օրինակը հաստատում է Դելակրուայի ասածը. Գրիգորյանի բանաստեղծությունները տպագրվել են մեր հանրապետության մի շարք գրական հանդեսներում և հավանություն գտել: Ստորև ներկայացնում ենք նրա բանաստեղծություններից երկուսը:

*ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ*



Սարին՝ բացված գարուն, խոտին՝ պառկած հովիվ,
Երկինք՝ կապած կամար, վրան՝ շուշան ամպեր:

Ջրպալ առվի ափին, հովվի ձեռքին՝ շվի,
Շվին՝ շուրթին շնչեր, պատմեր իր սերն հանդին...

Ալ. Գրիգորյան — «ԱՂԲՅՈՒՐԻ ՄՈՏ»



* * *

Գնա՛ ու թող քո ճանապարհին
Արևը լինի քեզ ուղեկից:
Դու մի՛ տրտնջա,
Որ ուրիշ ոչ ոք քեզ չի ուղեկցի:
Դու մի՛ տրտնջա,
Քո ճանապարհին հեռու երկայնքով
Քեզ քո երգերը երկար կուղեկցեն,
Ու արևը շեկ, տաք, ջերմանվեր,
Քեզ իր շողերով չի թողնի մենակ:

Ու դու նրա հետ,
Ու դու նրանով,
Ու դու նրա պես
Մնա՛ միշտ բարի,
Մնա՛ միշտ անչար,
Մնա՛ միշտ անչար
Ու տա՛ր քո լույսը,
Քո կայծը հոգու,
Ու տո՛ւր բոլորին...

Ժպտա՛, բարևի՛ր
Ու արևի պես
Դու հեռվի՛ց նայիր չար կամեցողին...
Դու բա՛րձր մնա, դու մնա անքե՛ն,
Դու սիրտդ լցրո՛ւ, լցրո՛ւ արևով
Ու գնա՛, գնա՛...

Բարի ճանապա՛րհ...
Բարի հանդիպո՛ւմ...
Բարի վերադա՛րձ...
Բարի վերադա՛րձ...



*Դպրոցական «Կարմիր գիրք»*

# ՁԵԼԿՈՎԱ



Կան ծառատեսակներ, որոնք առաջացել են երկրաբանական վաղ ժամանակներում, անցել հազարամյակների փորձություններով և հասել մինչև մեր օրերը: Դրանք այսպես կոչված երրորդական դարաշրջանի ռելիկտներն են, հնագույն ֆլորայի ներկայացուցիչները, որոնք գիտական տեսակետից մեծ հետաքրքրություն են ներկայացնում: Նման տեսակները մեծ մասամբ գտնվում են անհետացման եզրին և առաջնահերթ պահպանության խիստ կարիք են զգում:

Այդպիսի ծառատեսակներից է բոխիատերև ձելկովան, որի տերևները նման են դաժուն, իսկ ճյուղերի գույնը և ճյուղավորումը՝ կովկասյան փռշնուն: Հասնում է մինչև 30 մետր բարձրության, իսկ բնի տրամագիծը՝ 20 մետրի: Ապրում է մինչև 300 տարի:

Բոխիատերև ձելկովան հանդիպում է Կովկասում՝ Թալիշում, Ղարաբաղում և Արևմտյան Անդրկովկասում: Հայաստանում հանդիպում է միայն Զանգեզուրում՝ Շուրնուխ գյուղի շրջակայքում:

Օգտագործվում է չոր, քարքարոտ թեքությունների անտառապատման, առանձնապես էրոզիայի դեմ պայքարելու նպատակով, քանի որ բավականին չորադիմացկուն ծառատեսակ է և աչքի է ընկնում նաև ցրտադիմացկունությամբ: Հողի նկատմամբ պահանջկոտ չէ: Մշակվում է Երևանի կանաչ գոտում, որտեղ կան բավականին խոշոր ծառեր:

Ձելկովայի պահպանության գործը ամբողջովին ընկնում է Գորիսի շրջանի անտառապահների և բնակչության վրա: Մեծ է այդ գործում նաև շրջանի պիոներ-դպրոցականների դերը: Նրանք պետք է լավ պատկերացնեն, որ եղած ընդամենը մի քանի տասնյակ ծառերի ոչնչացման դեպքում այս հետաքրքիր ու հազվագյուտ ծառատեսակը իսպառ կվերանա մեր հանրապետությունից:

Շուրնուխ գյուղի միջնակարգ դպրոցի մանկավարժները և աշակերտները լավ կլինի ստանձնեն այս ծառատեսակի պահպանության շեֆությունը: Նախ, անհրաժեշտ է հաշվառման վերցնել գոյություն ունեցող բոլոր ծառերը, համարակալել դրանք, հոգ տանել վնասատուներից և հիվանդություններից պահպանելու մասին: Սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսներին, երբ հասունանում են ձելկովայի պտուղները, անհրաժեշտ է դրանք խնամքով հավաքել, ցանել անտառի բացատներում, համեմատաբար պաշտպանված վայրերում: Սերմերի որոշ մասն էլ կարելի է ցանել դպրոցամերձ հողամասում, կենսաբանական ուսումնասիրություններ կատարելու նպատակով:

Բոխիատերև ձելկովան, որպես հազվագյուտ և անհետացող տեսակ, գրանցված է մեր հանրապետության բուսական ծածկոցի «Կարմիր գրքում»:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

**1.**

— Ես վերջերս եմ վերադարձել նավարկությունից,— բարբառեց կապիտան Վրանգելը,— որտեղ անհավատալի արկածների հանդիպեցի: Դեկտեմբերի 31-ի գիշերը, ինչպես ընդունված է, բոլորը շնորհավորեցին միմյանց Նոր տարվա առթիվ և գնացին իրենց նավախցերը: Առավոտյան ես հայտնաբերեցի, որ մենք խարիսխ ենք նետել և կանգնել, իսկ մեր կողքին գտնվում է մի արտասահմանյան նավ: Հայտնեցին, որ նրա նավապետն ինձ հրավիրում է իր հետ դիմավորելու Նոր տարին: Մենք թողեցինք ուսներս և գնացինք հարևաններիս մոտ: Այնտեղ իրոք օրացույցը ցույց էր տալիս դեկտեմբերի 31-ը: Այսպես մենք երկու անգամ դիմավորեցինք Նոր տարին: Ի՞նչ եք կարծում, որտե՞ղ են տեղի ունեցել այս հանդիպումները:

**2.**

Իսկ մի անգամ ես ընկա մի այնպիսի ծով, որտեղ հնարավոր չէր ջրասույզ լինել:





**3.**

Եվս մի հանելուկ: Ես ճանաչում եմ երկու ձկնորսների, որոնք ապրում են նույն լճի ափին և անընդհատ վիճում են: Մեկն ասում է, որ լճի ջուրն աղի է, իսկ մյուսը պնդում է, որ ջուրը քաղցրահամ է: Եվ պատկերացնո՞ւմ եք, երկուսն էլ իրավացի են: Գիտե՞ք, թե որ լիճն է այդ:

# ՋՐԱՍՈՒԶԱԿ

Այս դեպքը տեղի է ունեցել Մոսկվայից մոտիկ, Կրասնոգորսկի շրջանի Օպալիխա գյուղում:

Մի անգամ երեխաները լողանում էին լճակում: Նրանց հետ էր և յոթնամյա Մարինան, որը լողալ չգիտեր և սկսեց խեղդվել: Չորքոտանի Չարլին, որը մինչ այդ հանգիստ պառկած էր ծառերի շվաքում, տեսնելով խեղդվող Մարինային, նետվեց ջուրը և բռնելով աղջկա հյուսքերից դուրս քաշեց ափ: Ու ամբողջ օրը Չարլին չէր հեռանում Մարինայից, վախենալով, որ նա հանկարծ նորից փորձանքի մեջ կընկնի:

Մի ուրիշ դեպք էլ, որը տեղի է ունեցել իմ ծանոթներից մեկի հետ:

Դիսերտացիոն աշխատանքի պաշտպանության հետ կապված հուզումներից հետո նա գնաց հանգստանալու գետի ափին: Պայուսակը, որի մեջ հենց նոր ավարտած աշխատանքն էր, դրեց կամրջի բազրիքին և մեկ էլ, ինչպես եղավ, արմունկով կպավ ու ցած գցեց: Ուշքի եկավ ջրի ճողփյունից. պայուսակը դանդաղ լողում էր հոսանքն ի վար: Այս ամենը տեսել էր մի աղջիկ, որն իր շան հետ անցնում էր մոտերքով:

— Ա՛լմա,— հրաման տվեց նա:

Շունը վայրկենապես ցատկեց բազրիքի վրայից, հասավ պայուսակին և ատամներով բռնած՝ լողաց ափ:

— Ինչո՞վ կարող եմ շնորհակալություն հայտնել,— հարցրեց ընկերս շան տիրուհուն:

— Սա մարզանք էր Ալմայի համար,— ծիծաղեց աղջիկը:

Թե՛ այս և թե՛ նախորդ շները պատկանում են ջրասուզակ տեսակին: Նրանց հայրենիքը Նյուֆաունդլենդն է, որը գտնվում է Կանադայի արևելքում: Ջրասուզակը երկարամազ սև մորթով, մեծ գլխով ու մուգ աչքերով գեղեցիկ շուն է: Դրանք ուժեղ և խոշոր կենդանիներ են: Այսպիսի շների բուծմամբ զբաղվում են ԴՕՍԱԱՖ-ի ծառայության շների բուծման ակումբները:

*Մ. ՊՍԱԼԱՄՈՎ*



Լույս է տեսնում 1923 թվականից

№ 12 դեկտեմբեր 1977 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 04132: Պատվեր 2183: Տպաքանակ՝ 51106: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 9 XII 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:





ԳԻՆԸ 15 Կ.

ԻՆԴԵՔՍ 7780

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԳԵՂԱՐՎԵՍ ԴՊՐՈ



*ՀՈՎՍԵՓ ՄԵԼՔՈՆՅԱՆ, գ. Նորապատ, 12 տ.*

*ԱՐԱՄ ՊԵՏՐՈՍՅԱՆ, ք. Հոկտեմբերյան, 15 տ.*



*ՌՈՒԶԱՆՆԱ ՊԱՏՈՒՐՅԱՆ, ք. Հոկտեմբերյան, 17 տ.*





*ՍԱՄՎԵԼ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ, գ. Հայկավան, 16 տ.*



*ԱՐՄԻՆԵ ՍԱՐԳՍՅԱՆ, ք. Հոկտեմբերյան, 13 տ.*

*ՍԱՄՎԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆ, գ. Մրգաշատ, 16 տ.*



Երևանի մանկական
բասրաքը, որն իր տեսա
եզակի է, հաստատապե
մեր կենցաղի մեջ, դար
լի անակնկալների ու
պումների սիրված վայր:

Արվեստի այսպիսի
ստեղծ կենտրոններից
Հոկտեմբերյանի մանկակա
արվեստի դպրոցը, որն հ
դրվել է 1972 թ.:

Անցած հինգ տարիների
թացքում դպրոցի սանե
բավորություն են ունեցել
ստեղծագործությունները
դրել Չեխոսլովակիայու
պոնիայում, Հունգարիայում,
լանդիայում, ինչպես նա
Միության ու հանրապետու
շատ քաղաքներում:

Դպրոցը և նրա սաները
ժանացել են ՀՍՍՀ կուլտու
մինիստրության պատվոգրե

Գունանկար, գրաֆիկա,
լեն, քանդակ, ահա ն
սիրած ժանրերը:

Պատանի նկարիչների ա
չի վրիպում ոչ մի «ման
Գունային վառ երևակայու
նրանք նկարում են այն ա
ինչը հուզում է իրենց՝ դի
կարներ, հեքիաթների նկ
զարդումներ, քաղաքային ս
րաններ, նատյուրմորտներ,
նարարական հրապարակն
այլն:

Աշակերտների ստեղծագո
թյուններում զգալի են շրջ
հատուկ գունային լուծ
բնապատկերները, կենցա
թեմաներով կոմպոզիցիանե
այլն:

Չնայած իր կարճատև
թյանը, Հոկտեմբերյանի մա
կան գեղարվեստի դպրոցն
դնն ունի իր դեմքն ու ձեռա

*ԱՇՈՏ ԳՐԻԳՈՐ*